# ԱՌԵՒԱՆԳՄԱՄԲ ԵՒ ԳՆՄԱՄԲ ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

*(Տեսութիւն հայ սովորութական իրաւունքից*

***Խ. ՍԱՄՈՒԷԼԵԱՆԻ***

## I.

*Ամուսնութիւնը շատ հին ժամանակում կատարւում էր կամ առևանգմամբ կամ գնմամբ։ Սակայն դեռ ևս իրաւագիտական աշխարհում որոշուած չէ, թէ ամուսնութեան սոյն երկու եղանակներն ինչ կարգով են գոյութիւն ունեցել։ Արդեօք սկզբում զարգացել է առևանգումն և ապա նրան յաջորդել գնումը, թէ երկուսն էլ միաժամանակ իբրև ամուսնութեան միակ միջոց համազօր գոյութիւն են ունեցել ժողովրդական կեանքում։*

*Մարդկութեան հասարակական կեանքի արշալուսին ընտանիքը միանգամայն զուրկ է եղել այն անհատական բնաւորութիւնից, որ ժամանակակից ընտանեկան կազմի յատուկ գիծն է։ Նախապատմական այդ ընտանիքները բաղկացած են եղել խմբակներից, որոնք կազմել են սերունդներ, տոհմեր, ցեղեր, և հիմնուած են եղել մայրիշխանութեան սկզբունքի վրայ։ Սերնդական խմբերը համայնօրէն են տիրել իրանց կանանց և ունեցել են ազատ սեռական յարաբերութիւնը։ Այսպիսի պայմաններում ամուսնական կապերի տևողականութեան մասին, ի հարկէ, խօսք անգամ չի կարող լինել, և հետևաբար զաւակների ու ծնող-հայրերի միջև անհնարին էր որոշ իրական յարաբերութիւն հաստատել։ Հետևապէս և միայն մայրը կարող էր ճանա-*

չունել իբրև զաւակի միակ տէրը, ինչպէս և ճանաչուել է. ուստի և վերջինս պատկանել է բացառապէս այն ցեղին կամ այն սերնդին, որին պատկանում էր նրա մայրը։ Այս տեսակ պայմաններում սերուած մարդկային խմբակցութիւնների մէջ ազգակցութիւնը տիրապետում էր լոկ մայրական գծով։ Սերունդն աճում էր ու զարգանում կանանց շնորհիւ, որոնք այսպիսով դառնում էին խմբական կեանքի մի տեսակ կենդրոն։

Բայց և այնպէս խմբական ամուսնութեան այդ յարաբերութիւններին դրուած էր որոշ սահմանափակում, որ՝ ինչպէս ցոյց են տալիս պատմական ու մանաւանդ ժամանակակից ազգագրական փաստերը, պահպանւում էր խստօրէն. դա այդպէս անուանած այլացեղ (էքսոգամի) ամուսնութեան սովորութիւնն էր։ Այդ սահմանափակումն արտայայտւում էր նրանով, որ մի սոցիալական խմբի անդամները, մի սերնդի պատկանող տարրերը՝ այր և կին, իրաւունք չունէին միմեանց հետ զուգաւորուելու, այլ մի խմբի կանայքը պէտք է զուգաւորուէին մի ուրիշ խմբի արանց հետ և ընդհակառակն։ Ուրեմն որոշ խմբի կամ սերնդի իւրաքանչիւր տղամարդը դառնում էր մի տեսակ ամուսին արտաքին, մի օտար խմբի ամէն մի կնոջ համար։ Այստեղից կարելի է եզրակացնել, որ ամուսնութիւնը գոյութիւն ունէր ոչ թէ առանձին անհատների, այլ ամբողջ որոշ խմբերի միջև։ Այս տեսակ խմբական ամուսնութեան վրայ էր կառուցանւում այլացեղ ընտանիքի հիմքը, առաջանում մայրիշխանութիւնը, ընտանեկան այն հիմնարկութիւնը, որն ընտանիքի զարգացման պատմութեան մէջ մեզ յայտնի ամենահին աստիճանն է։ Ահա այդ այլացեղ ամուսնութեան սովորութեան շնորհիւ՝ կին առնել և զուգաւորուիլ օտար սերնդից հնարաւոր էր միայն առևանգմամբ, մանաւանդ եթէ 'ի նկատի առնէինք, որ հնումը զանազան սերունդներն ու ցեղերը մեծ մասամբ միմեանց հետ թշնամական յարաբերութեան մէջ էին գտնւում։

Ժամանակի ընթացքում մայրիշխանութիւնը ենթար-

*կուելով էվօլիւցիօնի զարգացմանը, քայքայւում է, վերափոխուելով ընտանեկան կազմի նոր ձևերին, որոնք աւելի մօտ են ու նման ժամանակակից ընտանեկան դրութեանը։ Այստեղ զարգանում է ամուսնական յարաբերութիւնների տևողութիւնը, ուրեմն և հօր անձնաւորութեան մշտական ներկայութիւնը։ Ամուսինն, իբրև կնոջ ապաւէն, և միևնոյն ժամանակ իբրև հայր, օժտուած որոշ իրաւունքներով իւր որդիների վերաբերմամբ, աստիճանաբար առաջ է բերում հայրիշխանութեան, նահապետական գերդաստանի գաղափարը։ Սակայն այդ մայրիշխանութեան լուծմամբ բնաւ չի վերանում նրան կցորդ այլացեղ ամուսնութեան սկզբունքը։ Այլացեղ ամուսնութեան սահմանափակման ոյժը տակաւելն որոշ չափով շարունակւում է պահպանուել զանազան սերունդների յարաբերութիւնների մէջ։ Ակներև է, որ առևանգումն ևս, որպէս այլացեղ ամուսնութեան կցորդ մի կարգ, մնում է իբրև կին ձեռք բերելու միակ միջոց։ Նոյն իսկ այն ժամանակ, երբ մայրիշխանութեան ու այլացեղ ամուսնութեան վերջին նշոյլներն անհետացել էին իրականութեան մէջ, առևանգումը շարունակել է իւր գոյութիւնը ամուսնական իրաւունքի մէջ, որպէս մի սովորութական երևոյթ։ Յետագայում առևանգումը դառել է արդէն մի տեսակ մնացած ձևականութիւն, որ արտայայտւում է հարսանիքի ու պսակադրութեան ժամանակ յատուկ սիմբօլիկական գործողութիւնների մէջ։*

*Արդ դառնանք բուն նիւթին և առաջ բերենք այն փաստերը, որոնք կը ծառայեն մեզ իբրև ապացոյց, թէ հայկական կեանքումն էլ առևանգումը գոյութիւն է ունեցել որպէս մի իրական երևոյթ։*

II.

*Մովսէս Խորենացին պատմելով Ալանների արշաւանքը հայոց վրայ, յիշատակում է, որ Արտաշէս Բ., տեսնելով Ալանների գեղեցիկ իշխանազնուհուն, սիրեց նրան ու*

կամեցաւ կնութեան առնել, բայց երբ մերժումն ստացաւ՝ որոշեց բռնի ույժի դիմել։ Այստեղ Մովսէս Խորենացին յիշատակում է ժողովրդական վիպասանութիւնից մի հատուած, ուր նկարագրւում է այդ առևանգման պատկերը։

Հեծաւ քաջ թագաւոր Արտաշէսը գեղեցիկ սև ձին,
Եւ հանեց ոսկէ օղով կարմիր կաշէ պարանը,
Եւ անցաւ ինչպէս սրաթև արծիւ գետի միջով,
Եւ հանեց ոսկէ օղով կարմիր կաշէ պարանը,
Ձգեց Ալանների օրիորդի մէջքին,
Եւ շատ ցաւեցրեց փափուկ օրիորդի մէջքը,
Արագ հասցնելով նրան իւր բանակը*)։

Մի կողմը թողնելով այս հատուածի մասին Մովսէս Խորենացու տուած անձնական բացատրութիւնը, մենք իրաւունք ունենք բառացի հասկանալ վերոյիշեալ նկարագրութիւնը։ Եթէ ժողովրդական վիպասանները մինչև իսկ երևակայական ու լեգենդար դէպք են պատմում այդ հատուածում, այնուամենայնիւ պէտք է 'ի նկատի առնենք, որ վիպասանութիւնների մէջ նկարագրած պատկերները միշտ համապատասխան են լինում ժողովրդի կենցաղի պայմաններին, նրա աշխարհայեացքի աստիճաններին։ Ուստի այս դէպքումն էլ, եթէ ժողովրդական կեանքում կենդանի չլինէր առևանգման սովորոյթը, կամ եթէ այդ սովորոյթն այդտեղ դատապարտելի լինէր, երբէք վիպասանները մի բանաստեղծական երգ չէին հիւսիլ իրենց հերոսացրած թագաւորի ամուսնութեան մասին. թագաւորի, որ առևանգմամբ է կին առնում։ Ընդհակառակն շատ հաւանական է, որ ժողովրդի կեանքում տեղի էր ունենում առևանգումն և այն էլ, ինչպէս ենթադրում ենք, շատ զարգացած չափով։ Դրան ապացոյց են մի շարք արգելական ու պատժական կանոնները, որոնք սահմանուել են հայկական օրէնսդրութեան մէջ և որոնք դարերի ընթաց-

*) Մովսէս Խորենացու՝ հայոց պատմ. գիրք Բ, գլ. Ծ. աշխարհ. թարգմ. Խորէն ծ. վ. Ստեփանէի։

*քում շարունակ կրկնուել են։ Այդ տեսակ արգելական օրէնքներ կարող էին երեւան գալ միմիայն այն ժամանակ, երբ իրականութեան մէջ գոյութիւն են ունենում արգելումն առաջացնող պայմաններ։ Օրէնսդրութեան խիստ որոշումներն ու նրա դարևոր գործադրութիւնը դրուական են, թէ ժողովրդի մէջ ինչպիսի մեծ ծաւալով էր արմատացած առևանգումն և ինչպիսի դժուարին մաքառման ու հալածանքի էր ենթարկուած նա վարչական մարմինների կողմից։*

*Քրիստոնէութիւնը, մուտք գործելով Հայաստան, սկըսեց հալածել այն ամենն, ինչ յիշեցնում էր հեթանոսութեան գաղափարը։ Այդ հակաքրիստոնէական ոգու շարքն էր դասուելու անշուշտ և առևանգման սովորութիւնը։ Եւ ահա հենց առաջի քայլում, երբ առիթ է լինում յատուկ կանոններ մշակելու և օրէնսդրական ոյժ տալ նրանց, յօրինւում է 'ի միջի այլոց նաև առևանգման վերաբերեալ մի կանոն։ Գրիգոր Լուսաւորչի նախաձեռնութեամբ Վաղարշապատում գումարուած եկեղեցական ժողովը (325 թ.) սահմանում է 9-րդ կանոնը, որ ասում է. «Եթէ ոք առեւանգ արասցէ, պակն այն յաւեր եղիցի, և պսակեալն ում կամի՝ լիցի*)։ Մօտաւորապէս մի դար յետոյ կայանում է Շահապիվանի ժողովը (447 թ.), որտեղ մշակւում են նոր կանոններ, որոնցից 7-րդն առևանգման հարցին է վերաբերում. «որք բռնութեամբ և անիրաւութեամբ առեւանգ առնիցեն, կալցեն զկինն և անդրէն տացեն ցհայր և ցմայր, և տուգան տացեն փոխանակ անարգանացն, եթէ ազատ է՝ ՌՄ (1200) դրամ, եթէ շինական է ՈՎ (600) դրամ։ Եւ որ հրոսն երթեալ էին օգնականք սուտ փեսային՝ առ այրն Ճ (100) դրամ տուգանիցեն և զհրոսին դրամն զկէսն յեկեղեցին տայցեն և զկէսն կարօտելոց։ Ապա եթէ սուտ փեսայն ընդ աղջկանն պռնկեցաւ առանց պսակ դնելոյ՝ յեկեղեցի տուգան կալցեն Ճ (100) դրամ,*

*) *Արել եպս. Մխիթարեան՝ «Պատմութիւն ժողովոց հայաստանեայց եկեղեցւոյ», եր. 20.*

զի պսակն օրհնութեան անարգեաց. Գ (3) ամս յապաշխարութեան կացցէ։ Ապա եթէ երկցու ուրուք զաղտ պսակ եդեալ էցէ առանց հօր ու մօր աղջկանն, երէցն զքահանայութիւն չիշխէ պաշտել, և Ճ (100) դրամ տուգանս կալցին և կարօտելոց տացեն. և պսակն զոր եդ՝ անվաւեր լիցի։ Ապա եթէ յետ այսր խռովութեան և տուգանաց դարձեալ 'ի հաւանութիւն զան կամօք աղջըկանն և ծնողացն, և յառաջ պռնկեալ են, պսակ մի՛ օրհնեսցի, այլ իբրև զերկակլին ուռ տեառնագրեալ դիցի 'ի գլուխ. ապա եթէ կուսան կացեալ են, ըստ օրինին պսակ օրհնեսցի։ Եթէ ազատ և թէ շինական-կանոն այդ կացցէ»[1])։

Այսպիսի կանոններ յօրինում են նաև յետագայ ժողովներում և մենք նկատում ենք, որ XII-րդ դարում էս առևանգումը բաւականին խորն էր արմատացել ժողովրդի կեանքում, քանի որ մի կողմից՝ Մխիթար Գօշն է Հայաստանի մի ծայրում և միւս կողմից՝ Ներսէս Շնորհալին միւս ծայրում՝ Կիլիկիայում, գրեթէ միաժամանակ, սակայն իրարից անկախ յիշատակում են դրա մասին։

Մխիթար Գօշն իւր Դատաստանագրքի մէջ մտցնում է 3 կանոն առևանգման դէմ։ Սոցանից մէկը՝ ԼԴ յօդուածը (մասն Ա.), որի մի մասը վերցրած է «Հարցն հետևողաց» ԺԽ կանոնից, 'ի միջի այլոց ասում է. «Զառևանկն, թէև որդիս ծնցի և հայր և մայր և աղջիկն չկամիցին մի՛ ինչ միաս կրեսցէ 'ի չարագազան հոգւոյն, անդրէն դարձուցանել» [2])։ Երկրորդը՝ ԺԱ յօդուածը, որ նիւթ է առել նշանուած աղջկայ առևանգման դէպքը, իրեն հիմք է ունեցել Անկիւրիայի ժողովի ԺԲ կանոնը։ Այդ ԾԱ յօդուածով հրամայւում է առևանգուած նշանուած աղջիկը յետ վերցնել, մինչև անգամ եթէ բռնութեամբ ապաստանուած լինի. «Որք միանգամ խօսեալ աղջկունք են և զուգեալ

1) Աբէլ եպս. Մխիթարեան «Պատմ. ժողով. հայաստանեայց եկղ.» եր. 63.

2) Մխ. Գօշի՝ Դատաստանագիրք հայոց, հրատ. Վահան վ. Բաստամեանի. եր. 129.

*դատնիցին, և յետ այսորիկ այլք յափշտակեսցեն, կամ եղև զի անդրէն տացեն որում խօսեալն էր. թէև 'ի բռնութիւն ապստամբիցէ. մի՛ թողցեն։ Մի զզուգեալն և զխօսեալն համարի և անդրէն դարձուցանել, թէև պսակիցի ընդ յափշտակողին»[1]։ Վերջապէս երրորդ, այն է ՂԶ յօդուածն ամբողջովին առնուած է Շահապիվանի ժողովի մեր յիշած 7-րդ կանոնից ինչ ինչ յաւելումներով։ Սոյն վերջին յօդուածին Մխիթար Գօշը մեծ նշանակութիւն է տալիս, առաջարկելով դատաւորներին ու եպիսկոպոսներին ուշադրութեան առնել այդ օրէնքն և ըստ այնմ էլ վարուիլ խիստ հետևողութեամբ։*

*Ներսէս Շնորհալին իւր «Ընդհանրականի» մէջ 'ի միջի այլոց դատապարտում է, և խստիւ արգելում առևանգման սովորութիւնը։ «Մի՛ և այնոցիկ՝ որք առևանգաւսին, զնիցէ պսակ, զի հակառակ օրինաց Աստուծոյ է և բիւրք չարեաց պատճառք 'ի սատանայէ շարժեալք 'ի մոլեկան ախտս»[2]։*

*Նմանապէս վրաց թագաւոր Վախթանգի Դատաստանագրքի մէջ «Հայկական օրէնքներ» վերտառութեամբ յայտնի բաժնում գտնում ենք 62-րդ յօդուածը, որ վերցրած է «Ասորա-հռովմէական օրինագրքից» և որը վերաբերում է առևանգութեան. «կոյս աղջկան առևանգողը պէտք է մահուան պատժի ենթարկուի։ Եթէ երիտասարդը ոչ մի յարաբերութիւն չի ունեցել աղջկայ հետ և փախցրել է նրան փոխադարձ համաձայնութեամբ, այն ժամանակ առևանգողը պատժւում է իբրև շնացող»[3]։*

---

[1]) *Մխիթար Գօշի՝ Դատաստանագիրք հայոց՝ հրատ. Վ. վ. Բաստամեանի, եր. 151.*

[2]) *Թուղթ ընդհանրական՝ Ներսէս Շնորհալու. Ս. Էջմիածին, 1865 թ. եր. 83.*

[3]) Сборникъ законовъ грузинск. царя Вахтанга II. Изд. О. С. Френкеля, стр. 246·

## III.

Վերև յիշուած փաստերը բաւական են ապացուցանելու, թէ մեր սուրբ հայրերն ինչ եռանդով էին կռւում ժողովրդական այն սովորութիւնների դէմ, որոնք հեթանոսական ժամանակից 'ի վեր մնում էին, մանաւանդ ազգականութեան աստիճան խառնելում, իբրև ամուսնութեան մի անհրաժեշտ միջոց։ Անտարակոյս՝ դարերի ընթացքում գործադրած խիստ պատժական միջոցները մի կողմից և քրիստոնէական ոգու տակ սնուած բարքերը միւս կողմից, քայլ առ քայլ պէտք է նուազեցնէին առևանգման սովորութիւնները։ Ցիրաւի՝ կարծես սուրբ հայրերը մասամբ հասել էին իրենց նպատակին։ Առևանգումն, իբրև ամուսնութեան անհրաժեշտ մի եղանակ, միանգամայն վերացաւ հայկական սովորութական իրաւունքից. սակայն նրա հետքերը դեռևս չեն չքացել։ Կարծես այդ հին սովորութիւնն երբեմն այս ու այնտեղ, որպէս բնազդային ույժ յարութիւն է առնում ժողովրդի բարքերի մէջ ու յիշեցնել է տալիս հարս գրաւելու այն դիւրին, բայց և համարձակ միջոցը, որ «խղիթ» ու անվեհեր պատանիների գործ կարող էր լինել։ Դեռ ևս XIX դարու վերջերում գտնում ենք հայ ժողովրդի բարքերում առևանգման հատ հատ դէպքեր, որոնք թէև այլևս չեն կարող մեզ իբրև փաստ ծառայել, որ այսօր էլ առևանգումն իրականապէս կազմում է սովորութական իրաւունքի կարգերից մէկը, բայց և այնպէս՝ ապացուցանում են, որ այդ բնազդը միանգամայն արմատախիլ չի եղել ժողովրդի կեանքից։ Առաջ բերենք մի քանի փաստեր։

«Հարս փախցնելու սովորութիւնը դեռ ևս գոյութիւն ունի Ախալցխայի գաւառի հայերի մէջ. սակայն այդ չի կարելի համարել իբրև տեղական կեանքի ստէպ կրկնուող մի երևոյթ։ Առևանգումն՝ աղջկայ կամքին հակառակ՝ գրեթէ բնաւ տեղի չի ունենում, այլ սովորաբար առևանգուողը խօսք է կապում իւր փախցնողի հետ։ Առևանգման

*շարժառիթը մեծ մասամբ լինում է ծնողների անհամաձայնութիւնն աղջկայ ամուսնութեան հարցում։ Երբեմն էլ պատահում է, որ այդ շարժառիթը—աղջկայ հօր անհամաձայնութիւնն է լինում. այս դէպքում աղջկայ մայրը դառնում է առևանգման մասնակից։ Երիտասարդը նախօրօք պայմանաւորուելով փախուստի վերաբերմամբ աղջկայ հետ, ստանում է սրանից մատանի կամ մի որևէ թանգագին բան իբրև գրաւական։ Առևանգողը գալիս է իւր ընկերներով (մօտաւորապէս 10 հոգի), բոլորը զինուած։ Մօտենալով աղջկայ տանը և յարմար ժամանակ ընտրելով, յարձակումն է գործում երթիկից ի վայր, յափշտակում աղջկան և հեծնելով ձին, փախչում է ընկերների օգնութեամբ։ Առևանգողը փախցնում է աղջկան սովորաբար որևէ հարևան գիւղ, իւր ընկերոջ մօտ և այնտեղ գիշերը պառկում նրա հետ։ Այնուհետև երիտասարդն ու աղջիկը շտապում են ծածկել իրենց վարմունքը եկեղեցական պսակով, որ տեղի է ունենում 2—3 օրից յետոյ, ամենաուշ մի շաբաթից յետոյ, եթէ ի հարկէ եկեղեցու կողմից ոչ մի արգելք չի լինում։ Հակառակ դէպքում նոքա ապրում են ապօրինի կենակցութեամբ»*[1]*։*

*Ախալքալաքի գաւառում դեռ ևս պահպանւում է աղջիկ փախցնելու սովորութիւնն և սրա գլխաւոր շարժառիթը համարւում է «հաղեմասին»*[2]*։*

*Վարանդայում «դեռ մինչև այսօր էլ յաճախ պատահում է, երբ մի երիտասարդի մերժում են տալ իւր սիրած աղջիկը, որի պատճառը սովորաբար երիտասարդի ստոր դերդաստանից, կամ աղքատ լինելն է լինում, վերջինս հաւաքելով իւր մի քանի մտերիմ ընկերները՝ փախցնում է աղջկան։ Շատ անգամ առնելով աղջկայ համաձայնութիւնը, և ժամադիր լինելով նրա հետ, երիտասարդը ձիու գաւակն է*

---

[1] „Этнографическое Обозрѣніе" 1889 г. № 1—Свадебные обряды у ахалцыхскихъ армянъ.

[2] *«Ազգագրական Հանդէս» գիրք Ա. 1896 թ. Ջաւախք՝ Ե. Լալայեանի։*

*առնում աղջկան, որը իւր հետ առած է լինում իւր բոլոր զարդերը, և փախչում։ Եթէ աղջկայ ծնողները շուտ են իմանում այս, իսկոյն մի քանի ձիաւորներ հետևում են նրանց և եթէ հասնում են, տեղի է ունենում մի կատաղի կռիւ, որի ընթացքում երբեմն մարդիկ էլ են սպանւում։ Եթէ չեն կարողանում աղջիկը յետ խլել, տղան տանում է նրան մի ուրիշ գիւղ, իւր մի բարեկամի տուն։ Անմիջապէս աղջկայ հայրը յայտնում է մարմնաւոր և հոգևոր իշխանութիւններին, որոնք աղջկան կանչում, հարցաքննում են։ Եթէ աղջիկը խոստովանում է, որ իւր ազատ կամքով է փախել երիտասարդի հետ, նրանց թոյլ են տալիս պսակուելու, իսկ եթէ ոչ, բաժանում են. աղջկան վերադարձնում են հօրը, իսկ տղային պատժում պետական օրէնքներով։ Երբեմն պատահում է, որ երիտասարդը փախցնում է աղջկան, առանց նրա համաձայնութեան առնելու. այսպիսի դէպքերում հազիւ է պատահում, որ աղջիկը չգիջէր երիտասարդի ու նրա բարեկամների աղաչանքներին՝ յայտնելու թէ իւր կամքով է փախել։ Փախցրած և վերադարձուած աղջիկը հասարակութեան մէջ յարգանք չվայելելով՝ թշուառ աղջիկները նոյն իսկ ակամայից համաձայնւում են ամուսնանալու փախցնողի հետ [1])։*

*Բորչալուի գաւառում առևանգումը տեղի է ունենում, երբ աղջկայ ծնողները համաձայն չեն լինում տալու իրենց աղջիկը նրա վրայ սիրահարուած երիտասարդին և երբ վերջինիս ծնողները չեն կամենում առնել նրա սիրած աղջիկը։ Առաջին դէպքում սիրահարուած երիտասարդը հաւաքելով իւր ընկերներին փախցնում է աղջկան։ Ընկերներից մինը մի յարմար տեղ գտնելով աղջկան, բռնում է նրա ձկոյթ մատը, կոճիկները ծալում և հուփ տալիս. աղջիկը ցաւից ստիպուած վազում է երիտասարդի յետևից, մինչև որոշեալ տեղը, ուր թաք կացած ձիաւոր սիրահարը առնում է նրան ձիու վրայ և չափ ընկնում [2])։ Այս տե-*

[1]) *Ե. Լալայեանի՝ Վարանդա. եր. 117—118.*

[2]) *Ազգ. Հանդէս, գիրք IX, 1902 Բորչալուի գաւառ, եր. 215.*

*սակ առևանգմանից առաջացած հետևանքներն ու փոխադարձ յարաբերութիւնների վերջաբանը Բորչալուի գաւառում նոյն բնաւորութիւնն է ստանում, ինչ որ տեսանք նախորդ օրինակի մէջ՝ Վարանդայի վերաբերմամբ* [1]։

*Աղջիկ փախցնելը շատ տարածուած է Ալէքսանդրապօլի գաւառի գիւղացիների մէջ և առհասարակ առաջանում է հետևեալ պայմաններից։ Ինչպէս յայտնի է, գիւղերում թէ աղջկայ և թէ տղայի ընտրութիւնը վերապահուած է ծնողներին. աղջիկը իրաւունք չունի իւր համար փեսացու ընտրելու, դա մեծերի գործն է. տղան էլ շատ քիչ բացառութեամբ, համարեա թէ նոյն դրութեան մէջ է։ Պատահում է, որ աղջիկը «աչք է քցած» (սիրահարուած է) լինում մի երիտասարդի վրայ, և բնական է, որ ծնողների ընտրած ուրիշ փեսացուն նրան զզուելի պէտք է երևայ. բայց նա իրաւունք չունի բողոքելու դրա դէմ ծնողներին, նրա անունը կըխայտառակուի, նրան ուրիշ աչքով կընայեն, և աղջիկը ստիպուած է լինում ժամանակաւորապէս խեղդել իւր մէջ իրան տանջող այդ զգացմունքը։ Եւ ահա մի գեղեցիկ օր վեր է կենում իւր սիրած տղայի հետ ու փախչում հօր տանից. այդ դէպքում շատ քչերին է աջողւում պսակուիլ փախած տղայի հետ և ապրել որպէս ամուսիններ։ Պատահում են բացառիկ դէպքեր էլ. երբ մէկ երիտասարդ սիրահարուած է լինում մի աղջկայ վրայ, առանց վերջինից փոխադարձը ստանալու, և երբ դիմում է աղջկայ ծնողներին և մերժւում ստանում, այն ժամանակ վճռում է «զոռով» փախցնել. խիկ այդպիսի դէպքերը շատ տխրալի վախճան են ունենում և շատ անգամ սպանութիւնների տեղիք տալիս* [2]։

*Նոյնանման առևանգման օրինակներ գտնում ենք Երևանի՝ Ապարանի գիւղօրայքում* [3]*։ Նմանապէս վերոյիշեալ ձևերով առևանգումը տեղի կատարւում է Տաճկա-*

---

1) Ibid. *եր. 215—216.*
2) *Մշակ, 1904 թ. № 64.*
3) *«Մշակ» 1903 թ. № 217.*

Հայաստանում՝ Բուլանըխում. «Առևանգութիւնը տեղի կ'ունենայ գլխաւորապէս աղջիկ ու տղայի համաձայնութեամբ—սիրահարութեամբ. երկրորդ՝ երբ աղջիկը լիովին անհամաձայն է և առևանգութիւնը կըկատարուի բռնի, կոպիտ ուժի միջոցաւ, առևանգողները կ'աշխատեն շուտով աղջկայ կուսութիւնը խախտել, որպէսզի կամայ-ակամայ աղջիկը հնազանդեցնեն» [1])։

## IV.

Վերոյիշեալ մի շարք փաստերը պատկերացնում են առևանգման գոյութեան նշոյլները հայկական կեանքում։ Մենք տեսնում ենք, որ այդ բոլոր դէպքերում առևանգումն առաջացնող պայմանները, գործողութեան հանգամանքներն ու հետևանքները զարմանալի նմանութիւն ունին իրար հետ զանազան հայ կենտրոններում ծաղկող ժողովրդական կեանքում։ Չնայած այդ ժամանակակից օրինակներին, այնուամենայնիւ առևանգումն, իբրև սովորութական իրաւունքի մի դրական հիմնարկութիւն, այժմս արդէն վերացած կարելի է համարել մեր ժողովրդական կեանքից։ Սակայն երբեմն գոյութիւն ունեցող առևանգման սովորութիւնը թողել է հետքեր, որոնք այժմս էլ շօշափելի են իւրաքանչիւր քայլափոխում մեր սովորութական իրաւունքի մէջ։ Հասարակական յարաբերութիւնների կարգերը ժամանակի յառաջադիմութեան հետ չեն փոփոխւում յանկարծակի շրջումներով, չեն դադարում իրենց գոյութեան կռիւը մղել պատմական ճակատագրով զարգացող նոր կարգերի դէմ։ Եւ նոյն իսկ, երբ ներս խուժող նոր տարրերը յաղթանակով սկսում են տիրել ժողովրդական կեանքին, վերջինիս հին իրաւաբանական յարաբերութիւնները, թէև մեռած, իրականապէս վերացած, բայց և այնպէս շարունակում են երկար ժամանակ պահպանուել զանազան սովորութիւնների, ծէսերի, սնոտիապաշտութիւնների և այլ նման արտաքին ձևերի մէջ։

[1]) Ազգ. Հանդէս՝ գիրք Ե. 1899 թ. Բուլանըխ.

Ահա թէ ինչու սովորութական իրաւունքը զարմանալի պահպանողութեամբ մնացել է տակաւին մեր ժողովրդի մէջ և մի տեսակ սրբագործել է այն բազմաթիւ ծէսերն ու սիմբոլիկական ձևերն, որոնք տեղի են ունենում հարսանիքների ու նշանադրութեանց ժամանակը։ Առաջին հայեացքից անիմաստ ու աննպատակ ենթադրուող ծիսական կողմերը լուրջ հետազննողի աչքում կարող են համարուել իբրև մնացորդներ պատմական կեանքից, ժողովրդի նախնական կացը բնորոշող յարաբերութիւններից. մի խօսքով՝ հետքեր, որոնց հիման վրայ կարելի է գաղափար կազմել, թէ հնումը ո՞րպէս էր տեղի ունենում ամուսնութիւնը։ Յիրաւի՝ ժամանակակից ժողովրդական հարսանիքի ծէսերի ու սովորութիւնների մէջ կըգտնենք մի շարք գործողութիւններ, որոնք սիմբոլիկական ձևով պատկերացնում են, թէ ինչպէս փեսան բռնի ոյժով իւրացնում էր հարսին։

Առևանգումն հնարաւոր էր 'ի կատար ածել ուրիշների, օտար ոյժերի օգնութեամբ։ Այս դէպքում մեծ դեր էին խաղում ցեղակիցները, ազգականները, որոնք հրոսակախումբ կազմելով, արշաւում էին ամուսնացող երիտասարդի հրամանատարութեամբ հարսնացուի տնեցոց վրայ և փախցնում աղջիկը։ Հայոց հին օրէնսգրքերում դոքա միշտ յիշատակւում են «հրոս» անունով. «որք հրոսն երթեալ էին օգնականք սուտ փեսային» (Շահապիվանի 7-րդ կանոնը)։ Նախընթաց գլխում առաջ բերած օրինակներից էլ երևում է, որ առևանգող երիտասարդը հանապազ իւր մօտիկ ընկերների օգնութեամբ է փախցնում հարսնացուին։ Աղջիկն էլ ունէր իւր պաշտպանները—իւր ազգակիցներից կամ սերնդակիցներից, որոնք իրենց կողմից դուրս էին գալիս առևանգողների դէմ։

Այժմ մեր ժողովրդի մէջ մնացել է մի սովորութիւն, որ յիշեցնում է այդ նախկին հրոսակային ընկերակցութեան գաղափարը։ Ինչպէս յայտնի է, իւրաքանչիւր նորափեսայ նախքան հարսանիքը, հրաւիրում է մի խումբ

*երիտասարդներ «ագռավ չարեք», «մակարներ» և այլ ա-նուններով, որոնք հարսանիքի ամբողջ միջոցին միշտ փե-սայի շուրջն են խմբուած լինում ու հարսանիքի գոյն տուողներն են։ Նմանապէս և հարսը շրջապատուած է լի-նում իւրայիններով՝ երկսեռ երիտասարդներով «հարսնեղ-բայրները, հարսնքոյրերը» և այլ անուններով անձինք, որոնք մինչև որ հարսը մտնի փեսայի տունը, իրաւունք են հա-մարում պահպանել աղջիկը «չարից»։ «Մակարները», «ագռավները» և ընդհանրապէս փեսայի ընկերակիցները հարսանիքի ժամանակ, մանաւանդ երբ գնում են հարսը բերելու հօր տանից, միշտ զինուած են լինում հրացան-ներով կամ ատրճանակներով. իսկ եթէ աղջիկը մի ուրիշ գիւղ է գնում, նոյն իսկ ձիաւորուած ու սպառազի-նուած են գնում։*

*Դարալագեազում, «երբ մօտենում են հարսի գիւղին՝ հարսնքաւորները աշխատում են փայլել արտաքինով։ Զուռնայի նուագածութեամբ նոքա շատ արագ արշաւում են ձիանց վրայ, ճարպիկ շարժումներ են անում, հրացան-ներ են արձակում, մի խօսքով՝ աշխատում են գիւղի ու-շադրութիւնն իրենց վրայ դարձնել։ Սոքա արագութեամբ մօտենում են գիւղին և նորից ձիու գլուխը թեքում և նոյն արագութեամբ յետ արշաւում դէպի զուռնաչիները, որոնք միւս հանդիսականների յետևից կամաց առաջ են գալիս»[1])։ Այս նկարագրութիւնից՝ ագռավների խումբը նմա-նում է սպառազէն հրոսակախմբի, որ գնում է, կարծես գի-տակցելով իւր քաջութեան վրայ, հարուստ աւար առնելու։*

*Ղրիմու հայերի մէջ հարսնառների վերաբերմամբ կայ հարսանեաց մի երգ, ուր 'ի միջի այլոց ասում է.*

*«Թագաւորըս կուքա թուրով*
*Հալխը շատ է, կառնու զոռով»[2])*

---

1) *Բաջբերունի՝ Հայկական սովորութիւններ՝ «Ազգագրական Հանդէս» 1901 թ.* VII *և* VIII *գրք.*

2) *Նոյն՝ Ճանապարհորդական նկատողութիւններ—Դարալա-գեազ. «Փորձ», 1881 թ. №* IV

Այդ տեսակ զինուած խմբի ներկայութիւնը պէտք է ենթադրել միմիայն նրանով, որ իւրաքանչիւր առեւանգումն անշուշտ հանդիպելու էր ընդհարման և ընդդիմադրութեան։ Ահա այդ ընդհարումն և ընդդիմադրութիւնն այսօր շատ տեղերում սիմբօլիական ձեերով շարունակւում է տեղի ունենալ, յիշեցնելով նախկին արիւնալի կռիւները։

Եթէ հարսը օտար գիւղացի է, սորա համագիւղացիքը փակում են պարանով ճանապարհը փեսայի գիւղից եկած հարսնքաւորների արշաւախմբի առաջ և մէկը իրենցից առաջ գալով, հրաւիրում է նորեկներին ըմբշակռուի։ Այստեղ փեսայի ազգականներն ստիպուած են փող նուիրել հարսի համագիւղացի կտրիճներին, որպէսզի սորա վերցնեն պարանը և ճանապարհ տան նորեկ փեսայի խմբին [1])։ Արդ աւելորդ չի լինիլ առաջ բերել յայտնի ճանապարհորդ պ. Քաջբերունու մի նկարագիրը՝ հարս բերող կտրիճների այդ տեսակ արշաւախմբի մասին։ «Կալերի մօտ, մեր ճանապարհի վրայ սպասում էր մեզ առոյգ երիտասարդների մի խումբ. նրանցից մինը, չուխան հանած, թեերը վեր քաշած, գլուխը բաց, երեսը վառ, աչքերը փայլուն, այնպիսի մի դիրք էր բռնել, որ կարծես առիւծի նման պէտք է յարձակուի իւր որսի վրայ։ Նրա ընկերները առանձին խնամքով նրան բռնած, ծանրաքայլ կերպով յառաջ էին մղում։ Տօ, լա, ձիս բռնէք, ձիս բռնէք, մէ՛ ըշկացէք դար մէջքը քանի տեղից կըկոտեմ—ասաց և ձիուց վայր նետուեց մեր խմբից մի առոյգ, ուժեղ երիտասարդ։ Փորձ էր ծնացել, որ երկու ախոյեանները միմեանց կըպչէին, բայց մեր խումբը բռնեց մեր երիտասարդին և ապա հանելով խուրջինից եփած միս, գաթայ, հաց, գինի, յանձնեցին Խաչիկու (գիւղի անունն է) խմբին։ Այս սովորութիւնը լինում է այն ժամանակ, երբ մի գիւղից գնում են միւս գիւղը հարս բերելու։ Նորահարսի գիւղի ազատները դուրս գալով հարսնքաւորների առաջ, կըպահանջեն

[1]) Свадебные обычаи ахалцихск. армянъ—„Этнографическое Обозрѣніе„ 1889 г. №1.

նրանցից կամ մենամարտութիւն կամ ուտելիք և խմելիք, որ կոչւում է ազափանա»[1])։

Երկու հակառակ խմբերի մրցման ու ընդհարման նոյն պատկերն է նկարում պ. Բենսէն Բուլանըխում կատարուող հարսանեկան սովորութեան վերաբերմամբ։ «Բոլորն ընդածուրիկ երիտասարդներն (փեսայի կողմից), տոնական շորերով զարդարուած, ընտիր ձիերու վրայ հեծած, ձեռքերնին երկայն ու հաստ փայտեր՝ և ոմանց՝ նաև զէնքեր առած, երգելով քրդական լօլօն, ձիարշաւով և ջրինդով առաջ կերթան։ Ահա և մի խումբ ձիաւորների, որ աղջկայ գիւղի կողմից կըդիմաւորէ հարսնածին, ջրինդով մրցութիւն կըսկսուի. մէկն իւր ձին, միւսն իւր ձեռքի ոյժը կըփորձէ, մական կըձգեն, հարուած կըտան, կերգեն, կըքօսան և հարահրոցով կըմօտենան գիւղին, բայց վերջինիս նպատակն է հարսնածից քոլօս (գլխարկը) փախցընել, որ եթէ յաջողուի իրենց, հարսնածի համար մեծ անպատւութիւն կըհամարուի։ Ջրինդի խաղացման միջոցին դիմաւորող խմբից մէկը հարսնածի անդամներից մէկի «քոլօսն» առնելով կըփախչէ. բոլոր ձիաւորները կընգնեն յետևից, կողմնակիցները կըքաջալերեն, հակառակորդները կըհալածեն մինչև գիւղը, եթէ բռնել յաջողեցան՝ լաւ կըդնգսեն. իսկ եթէ ոչ՝ կորագլուխ կըլինեն, և 10—20 դրուշ տալով, քոլօսը յետ կ'առնեն։ Եթէ քոլօս փախցընելը չյաջողուի, ձիաւորները խաղը շարունակելով և իրև ախոյեաններ մրցելով կըմօտենան գիւղին»[2])։

Այս տեսակ կեղծեալ ընդդիմադրութիւն ցոյց են տալիս փեսայի ընկերներակիցներին ոչ միայն աղջկայ գիւղի սահմանում, այլ և այն տանը, որտեղ ապրում է հարսնացուն։ Ախալցխայի գաւառում «հարսի ազգականները, առաւելապէս երիտասարդութիւնը կեղծօրէն ընդդիմանում էր գալիք ներս թողնել փեսացուին և սրա ուղեկիցներին»

---

[1]) Քաջբերունի՝ Ճանապարհորդական նկատողութիւններ— Դուրալագեաղ «Փորձ» 1881 թ. № IV.

[2]) Բենսէ՝ Բուլանըխ—«Ազգագրական Հանդէս» 1899թ. գիրք Ե.

և ապա արդէն, երբ ընծաներ էին ստանում, թոյլատրում էին նորեկներին ներս մտնել հարսի տունը[1]։

Ջաւախքում, «երբ փեսի հայրը, տղամարդ բարեկամներն և քաւորը դաւուլ զուռնի առաջնորդութեամբ հասնում են հարսնացուի տանը, տան փոքրիկներից՝ քանիսը փակում են դուռը և միայն այն ժամանակ են բաց անում, երբ քաւորը տալիս է 20—30 կոպ.»[2]։

Զէյթունում, երբ հարսին պէտք է դուրս տանեն տանից, սորա եղբայրը կամ մօտիկ ազգականներից մէկը փակում է դուռը և թոյլ չի տալիս հարսին տանել, մինչև որ մի ընծայ, մեծ մասամբ կարմրագոյն կօշիկ, չստանայ փեսայի կողմից[3]։

Նմանապէս և Բուլանըխում, «երբ հարսը կըմեկնի հայրենական օճախից և մինչև սկեսրայրը դրսու դռան շէմքը կըփոխէ, հարսի եղբայրներից մէկը դռան կըշտին կանգնած, ձեռք կըձգէ խնամու օձիքը և կըպահանջէ ալ-բօր զօտին, որ ընդունուած սովորութեան համաձայն անպատճառ կըտրուի և ապա հարսնածը կընդնի ճանապարհ»[4]։

Այս ընծաները կամ դրամական վճարները վերև բերած օրինակների մէջ ուրիշ ոչինչ են, եթէ ոչ մի տեսակ փրկանքի գաղափարի մարմնացումն, փրկանքի որ սովորած էին լինում առևանգողները վճարել հարսի ազգականներին կատարած յափշտակութեան համար։ Այդ փրկանքի ներկայութիւնն այստեղ դարձել է բարեփոխուած ու իւր սկզբնական նշանակութիւնը կորցրած մի ձևականութիւն, որ երկար պատմական զարգացման հետևանք է։ Այդ փրկանքի գոյութիւնը մեզ ծառայում է իբրև մի փաստ, որտեղ թաքնուած է յետագայում գնմամբ կա-

---

[1]) Свадебные обычаи ахалцыхскихъ армянъ—Этнографическое Обозрѣніе, 1889 г. № 1.

[2]) Ե. Լալայեան—Ջաւախք՝ եր. 139.

[3]) Յ. Ալլահվերդեան—Ուլնիա կամ Զէյթուն.

[4]) Բենսէ՝ Բուլանըխ, «Ազգագր. Հանդէս» 1899 թ. գիրք Ե.

*յացող ամուսնութիւնների սկզբնաւորութիւնը, գնման սովորութեան առաջի սաղմերը։*

*Ակներև է, որ առևանգումն տեղի ունենալուց յետոյ պէտք էին թշնամական յարաբերութիւններ առաջանային փեսայի կողմնակիցների ու հարսի ազգականների միջև։ Ահա և այդ տեսակ թշնամական յարաբերութիւնները կեղծ ձևականութեամբ արտայայտւում են և այժմեան հարսանեաց մի քանի սովորութիւնների մէջ։ Նախ՝ այդ թշնամական վերաբերումը կարելի է տեսնել այն երևոյթի մէջ, որ հարսին շրջապատող ազգականներն ու մանաւանդ համագիւղացիքը ամենայն կերպ աշխատում են փեսացուի ընկերակիցներին ծաղր ու ծանակի և ընդհանրապէս վիրաւորանքի ենթարկել։*

*Գանձակի գաւառում սովորութիւն կայ երեկոյեան, երբ զուռնան նուագում է հարսնետանը, բոլոր հարսնաւորները նորից հաւաքւում են հարսի տունը... Թաղթի վրայ իւր մակարներով շրջապատուած թագաւորը նստած է լինում և բերանը մի կտոր բան չի դնում, մինչև որ աները մի որևէ բան չի նուիրում նրան իբր բերանբացէք։ Բայց իրեն այնպէս ծանր ու մեծ պահող թագաւորին սաստիկ նեղացնում են թագուհու ընկերուհիները, եթէ սա գտած չի լինում նորահարսի մատների մէջ պահուած մոմը։ Աղջիկները ցոյց են տալիս այդ մոմը մակարներին և ծիծաղում են թագաւորի անշնորհքութեան վրայ. և երբ հենց իրեն են ուղարկում, նա կարմրելով փող է վճարում, որ թաքցնեն։ Եթէ աղջիկները քիչ են համարում այդ՝ վերադարձնում են փողը և կրկին ցոյց տալիս մոմը, մինչև որ վերջապէս գոհացում են ստանում [1])։*

*Դարալագեազում, ինչպէս և շատ տեղերում, եթէ թագաւորամայրը նոյնպէս եկել է տղամարդկանց հետ հարսը տանելու՝ նորա մասին երբեմն ասում են զուարճանալու և ծիծաղելու համար հետևեալ խօսքերը.*

---

*[1]) Ե. Լալայեան՝ Գանձակի գաւառ.*

«Խնամի դու խոշ ես եկել,
Դարդակ ու բոշ ես եկել,
Երկու բլոճ ես բերել,
Էն էլ ճամբին ես կերել.
Բերածդ է կանանչ կապայ
Թեւերն ու փէշը ծակ ա.
Խնամի, դու խոշ ես եկել,
Դարդակ ու բոշ ես եկել [1])։

Այդ տեսակ վիրաւորանքներից մէկն էլ «ըօլոզ» փախցնելն է, որ, ինչպէս մեզ արդէն յայտնի է, տեղի է ունենում Բուլանըխում։ Գլխարկ փախցնելու սովորութիւնը զարմանալի նմանութեամբ գոյութիւն ունի նաև հովկասում Օսերի մէջ [2])։ Նոյն Բուլանըխում, երբ հարսնածի խումբը իջևանում է հարսի գիւղում, «հարսնած հիւրասիրող տանտէրերը մեծ զգուշութիւն կըբանեցնեն, թշնամի մարդիկը հարսնածի ձիերու պոչերը չկտրեն, որ մեծ անպատւութիւն և անարգանք է, և ինչպէս շատ անգամ պատահել է, այդ կերպ անարգուած անձինք սրտի կսկիծէն մեռեր են»։ Նոյն կեղծ վիրաւորանքի պատկերն է ներկայացնում Բուլանըխում կատարուող հետևեալ սովորութիւնը։ «Թափորից դուրս, երեխայքը երեսներին ալիւր քսած տեսակ տեսակ ծամածռութիւններ ու միմոսութիւններ անելով կըվազվզեն այս ու այն կողմը. փեսայի մերձաւորներից մէկը, իշու վրայ հեծցնելով՝ պոչը կուտան ձեռքը ու չորս կողմից ձնթոփ ու քարէ կոշտեր կուտան հօ կուտան խեղճի գլխուն ու արևուն, բայց նա ոչ ոքի խաթրին չդիպչի հասարակութեանը զուարճութիւն պատճառելու համար» [3])։

Զէյթունում, երբ հարսին դուրս կըտանեն տանից,

---

[1]) Թաջըերունի՝ Հայկական սովորութիւններ—«Ազգագրական Հանդէս» 1901 թ. գիրք VII և VIII

[2]) Максимъ Ковалевскій—Древній законъ и современный обычай, т˙ 1 стр. 250.

[3]) Բուլանըխ,—Ազգագր. Հանդէս, 1899 թ. գիրք Ե.

կ՚սկսեն հրացանաձգութիւն և երեխայքը ու շրջապատողները կրկանչեն՝ «խաբեցինք, տանք» [1])։

Շիրակում մինչև քահանայի գալն ու նշան օրհնելը հարսի տանը հաւաքուած փեսայի ազգականները զանազան խորտիկներով լի սեղանը վայելելուց յետոյ, հարսնացուի ծնողներին ու մերձաւորներին լացացնելու նպատակով բղաւելով երգում են՝ «Տանում, տանում են, ատէ ջան» երգը [2])։

Ախալցխայի գաւառում, նմանապէս շատ տեղերում, խաչեղբայրը պսակի առաջին գիշերը չի քնում և հսկում է, վախենալով՝ մի գուցէ աղջկայ եղբայրը գողանայ նրանից փեսայի թուրը. և եթէ գողացուի՝ դա մեծ անպատւութիւն է համարւում փեսայի համար։

Դարալագեազում հարսնածի ժամանակ աղաւիներն ու թաղաւորի կողմի մարդիկ դուրսը կանգնած, դիտմամբ գոչումներ են անում «ճիննինի, ճիննինի, հարսը տարմին» որպէսզի բարկացնեն հարսի ծնողներին ու բարեկամներին։ Այդ հրաժարականի, լացի, աղմկի և ուրախութեան ժամանակ աղաւիներից մինը, որ կոչւում է *աղուէս*, ընկնում է հարսի հօրանց հաւերի յետևից և ծածուկ աշխատում է բռնել նրանց ու տանել, որպէսզի յետոյ աղաւիներն ուտեն, քէֆ անեն [3])։

Գանձակի գաւառում հարսնածի ժամանակ մակարներն ու աղաւիները ծաղրում են հարսնամօրը երգելով.

Մէջքդ կոտրի, հարսնամէր,
Կուռդ կոտրի, հարսնամէր,
Ոտդ կոտրի, հարսնամէր,
Աչքդ դուրս գայ, հարսնամէր,
Ա՜յ, բէյմուրվաթ, էս ինչա՛,
Ախէդ գնում ա, էլ չի գալ [4])։

---

1) Ալլահվերդեան,—Ուլնիա կամ Զէյթուն։
2) Էմինեան Ազգագրական ժողովածու. հատ. Ա. երես. 247.
3) Քաջբերունի՝ Հայկական սովորութիւններ—Ազգագրական հանդէս. 1901 թ. գիրք VII և VIII եր. 179.
4) Եր. Լալայեան՝ Գանձակի գաւառ—եր. 32—33.

Միևնոյն ժամանակ մակարներն առանց այլևայլութեան սկսում են սրով խփել ու սպանել պատահած հաւերին և սրանց ոչ մի տէրը իրեն իրաւունք չի համարում պահանջել հաւի արժէքը։ Երբեմն այսպէս են վարւում նաև պատահած գառների և ուլերի հետ [1])։

Բորչալուում հարսնառ գնալիս, եթէ թագւորը բարգահ կտրէքի ժամանակ որոշուած նուէրներից պակաս կամ վատ է բերել, հարսնացուի կողմի ազգականները ծեծում են թագաւորի մակարներին, թէ ինչի են նոքա քիչ կամ վատ բերել։ Սովորաբար հարսի գիւղի ազգականների համար թագւորը նուէր է տանում թխուածքներ և հաւ, ապա թէ ոչ այդ ազգականները կըյարձակուեն թագւորի մակարների վրայ և, իրենց պահանջը յայտնելով, կըծեծեն նրանց [2])։

Թշնամական այդ յարաբերութիւններն երկու կողմերի միջև աւելի ևս կենդանի են ներկայացւում՝ հարս թագցնելու սովորութեան մէջ։

Վարանդայում, երբ փեսան իւր ընկերներով գալիս է հարսնացուի տունը, «մի քանի րոպէում բոլորը խուժում են ներս։ Ղարադաղի մի անկիւնում մի վարագուրով կտրած է լինում, որ կոչւում է պռամալ։ Այստեղ է լինում հարսնացուն իւր մի քանի ընկերուհիների հետ։ Մակարները գնում, նստում են վարագոյրի մօտ, իսկ քաւորը, թագւորը և փեսեղբայրը կանգնում են գորգի առաջ վառ մոմերը ձեռքին։ Տան ծերունին մօտենում է թագաւորին և նուիրելով նրան մի գօտի կամ մի ուրիշ բան. խնդրում է նստել։ Թագւորը, եթէ գոհ է մնում, նստում է, իսկ եթէ ոչ, կանգնած մնում»։ Այնուհետև տնեցիներից ներկայ եղողները մօտենում են ու աղերսում, որ փեսան բաւականանայ տուած ընծաներով [3])։

---

1) Ibid. եր. 34.

2) Եր. Լալայեան՝ Բորչալուի գաւառ—Ազգագր. Հանդէս. 1902 թ. գիրք IX եր. 244—445.

3) Եր. Լալայեանի՝ Վարանդա—Ազգագր. Հանդէս. 1898 թ. գիրք. Բ.

Նոյն գաւառում հարսնքաւորներն երբ դիմում են դէպի աղջկայ տունը, վերջինիս հայրն իւր հիւրերով դիմաւորում է սրանց։ «Մինն էլ մի երկար մաշալլա ձեռքին առաջնորդում է նրանց։ Այս տեսնելով, մակարներն արձակում են իրենց հրացանները այդ մաշալլայի վրայ և ուռա բղաւում» [1])։

Նոյնպիսի հրացանաձգութիւն տեղի է ունենում, ինչպէս վերը տեսանք, Ջէյթունում, երբ աղջկան տանում են հօր տանից։

Ընդհանրապէս շատ ու շատ տեղերում հրացանաձգութիւնը մակարների կողմից անընդհատ տեղի է ունենում հարսանիքի ամբողջ ընթացքում, մանաւանդ երբ աղջկան ուղեկցում են դէպի եկեղեցին և ապա փեսայի տունը։ Առաջի հայեացքից կարելի էր ենթադրել, որ հրացան են ձգում զուարճութիւնից ու բաւականութիւնից։ Սակայն այս սովորութիւնն, ինչպէս և շատ նման սովորութիւնները, եթէ քննենք աւելի խորը, կըգտնենք, որ դա ուրիշ ոչինչ է, եթէ ոչ, հին ժամանակներում տեղի ունեցող առևանգման հետևող երևոյթներից մէկը։ Չէ՞ որ առևանգումն առանց կռուի ու արիւնհեղութեան չէր անցնում. հետևապէս այդ մեր ժամանակակից հրացանաձգութեան վրայ պէտք է նայել իբրև մի լոկ, կեղծեալ պաշտպանողական միջոցի վրայ, որ փեսայի ընկերները ձեռք են առնում իրենց կարծեցեալ հալածողների՝ հարսնացուի ազգականների դէմ։ Իսկ այժմս այդ հրացանաձգութիւնը, նախկին ժամանակներից մնացած զէնքով դիմադրելու սովորութիւնը՝ կորցրել է իւր հիմնական գաղափարը և դարձել է մի զուարճութիւն, մի բաւականութիւն, որ մի առանձին շուք է տալիս հարսանիքին։

Թշնամական (գոնէ առևանգման սկզբներում առաջացած) յարաբերութիւնների հետքերը կարելի է նկատել նաև հետևեալ ուշագրաւ սովորութեան մէջ, որ գրեթէ բոլոր հայոց մէջ գոյութիւն ունի։ Աղջկայ ծնողները, նր-

[1]) Ibid.

մանաւանդ և ազգականներն, երբեք ներկայ չեն լինում թէ եկեղեցում պսակադրութեանը և թէ ընդհանրապէս հարսանիքում, փեսայի տանը, այլ հարսը տանելուց յետոյ մնում են իրենց տանը։ Նոյն թշնամական հետքերը աւելի ընդլէֆ երևում են Բուլանըխի մի սովորութիւնից։ «Պսակուելուց 4—5 շաբաթ յետոյ սովորութիւն ունեն հարսի հէրանք՝ վերադարձնել աղջիկը իրենց տուն, որ կըկատարուի յատուկ հրաւիրակ կնոջ ձեռամբ։ Մնալով 3—4 շաբաթ հէրանց տանը, վերադարձը նոյնպէս և փեսայի տան կողմից գնացող հրաւիրակ կնոջ ձեռքով կըկատարուի» [1]։ Այդ ժամանակից յետոյ հարսը իրաւունք ունի յաճախել իւր պապոնց տունը։ Այս տեսակ կեղծ խզուած յարաբերութիւնները երկու ընտանիքների մէջ և հարսանիքից յետոյ, ի հարկէ, պէտք է բացատրել այն թշնամական զգացմունքով, որը առաջանում էր հին ժամանակները աղջիկը փախցնելիս վերջինիս ծնողների մէջ։ Անհրաժեշտ էր հաշտութիւն կայացնել, որպէսզի աղջիկը կարողանար իւր ծնողների մօտ յաճախել։

Մի նոյնանման սովորութիւն գոյութիւն ունի նաև Դարալագեազում, ուր մեծ պասի մէջինքին (երբ հարսանիքը բարեկենդանին է կատարուած) հարսի հայրը իւր աղջկայ համար բերում է Թաւաղ, այսինքն զանազան մրգեղէն և ուտելիք։ Ծաղկազարդին իւր աղջկան հրաւիրում է իւր տուն և այդ հրաւէրը կոչւում է ղարծ. աղջկան ծնողները պահում են իրենց մօտ մինչև Համբարձում [2]։

## V.

Վերը բերած բոլոր օրինակները, մեր կարծիքով, միանգամայն բաւական են պարզաբանելու այն հարցը, թէ հա-

[1]) Բենսէ՝ Բուլանըխ—Ազգագր. Հանդէս, 1899 թ. գիրք Ե.

[2]) Թաջրերունի՝ Հայկական սովորութիւններ—Ազգագրական Հանդէս. 1901 թ. գիրք. VII և VIII. եր. 201.

յոյ մէջ առեւանգումն երբեմն գոյութիւն է ունեցել իբրև մի դրական իրաւաբանական սովորոյթ։ Սակայն, ինչպէս ներկայ յօդուածիս մէջ ակնարկել ենք, առեւանգումը ժամանակի ընթացքում կամաց կամաց չքացել է ասպարէզից։ Այդ վերացման նպաստող հանգամանքներն եղել են մի կողմից՝ քրիստոնէական վարդապետութեան ազդեցութիւնը, միւս կողմից էլ՝ սոցիալ—իրաւաբանական յարաբերութիւնների աստիճանական զարգացումը։ Մեզ արդէն յայտնի է, որ հայոց օրէնսդրութեան մէջ գոյութիւն ունէին մի շարք արգելական կանոններ, որոնք խմբագրուել են եկեղեցական ժողովներում մեր սուրբ հայրերից առեւանգման դէմ իբրև մի անբարոյական երեւոյթի, իբրև հակաքրիստոնէական հիմնարկութեան։ Այդ հիման վրայ պէտք է ի նկատի առնուել, թէ ինչ հզօր դեր էր խաղում հոգեւորականութիւնը մեր պատմութեան զարգացման մէջ և թէ հայ-հոգևոր վարչական մարմինները որքան ճիգ էին թափում իրենց ազդեցութեամբ արմատախիլ անելու ժողովրդի կեանքից քրիստոնէութեան գաղափարին հակառակ, կամ ինչպէս իրենք էին պնդում՝ հեթանոսական սովորութիւնները։

Միւս կողմից էլ՝ երբ քաղաքացիական կեանքը զարգանալով առաջ է բերում որոշ հասարակական հիմնարկութիւններ, երբ ժողովրդներից, ազգութիւններից կազմակերպւում են պետական մարմիններ, որոնց նպատակն է ներքին ու արտաքին խաղաղութեան ու կարգապահութեան վրայ հոգ տանել, որպէսզի կարելի լինէր ընթանալ յառաջդիմութեան ուղիով, ինքնըստինքեան առեւանգումը սկսում է չքանալ ասպարէզից։ Առեւանգումն արդէն համարւում է պետական կարգապահութեան սկզբունքին հակառակ ու ներքին հասարակական խաղաղութիւնը խանգարող մի երեւոյթ։ Ակներև է, որ պետական վարչական մարմինները միջոցների և այն էլ խիստ միջոցների էին ձեռնարկում առեւանգման գոյութիւնը կասեցնելու նպատակով։ Շնորհիւ այդ տեսակ միջոցների, առեւանգումն, յի-

*րաւի, սկսում է նուազել ու վերացուիլ ժողովրդի սովորութական իրաւունքից և տեղի տալ գնման սովորութեանը։*

*Հարսի գնումը, որ պէտք է ասած, գոյութիւն է ունեցել նոյնպէս շատ հին ժամանակներից 'ի վեր, գրեթէ առևանգման հետ զուգընթաց, սկզբում միանգամայն այլ նշանակութիւն է ունեցել։ Նա ծառայել է իբրև մի փրկանք, որ վճարուել է տղայի կողմից աղջկայ տէրերին, որպէսզի մի կողմից՝ ծածկուի այն վնասը, որ կրում էին հարսի ծնողները, զրկուելով աշխատաւոր ձեռքերից և միւս կողմից՝ հատուցանուի աղջիկ փախցնելիս վերջինիս ծնողներին ու ազգականներին հասցրած տոհմային վիրաւորանքը։ Սակայն երբ առևանգումն անողօք արգելումների շնորհիւ նուազել է, գնումն ընդհակառակն աւելի և աւելի զարգանալով, սկսել է միանգամայն տիրապետող, ինքնուրոյն մի եղանակ դառնալ ամուսնութեան հարցում։*

*Հայոց մէջ, յիրաւի, գոյութիւն է ունեցել և այժմս էլ գոյութիւն ունի, քիչ թէ շատ փոփոխուած եղանակներով, հարսի գնումը։ Մի կողմը թողած պատմական աղօտ տեղեկութիւնները, արդի ժողովրդական հարսանեաց սովորութիւնների մէջ, գոնէ այն տեղերի վերաբերմամբ, ուր գնումն արդէն վերացել է, նկատում ենք հետքեր, որոնց սիմբօլիկական ձևերը յիշեցնում են երբեմն տիրապետող գնման գործողութիւնը։*

*Թէ պատմական Հայաստանում տարածուած էր գընումն, իբրև մի իրաւաբանական երևոյթ, դա մեզ յայտնի է Բիւզանդական կայսր Յուստինիանոսի նշանաւոր* XXI Novella-*ից*—«De Armeniis, ut et illi per omnia Romanorum leges sequantur», *որով 536 թուից սկսած Հայաստանում մուծւում էր 'ի գործադրութիւն ընդհանուր Հռովմէական իրաւունքը։ Այս շրջաբերականի մէջ հռովմէական կայսրը մատնացոյց է անում, որ հայերը շատ սովոր են դասում կանանց և թէ Հայաստանում տգեղ սովորութիւն կայ՝ այն է — գնել հարս ամուսնութեան համար, որպիսի գործողութիւնն ըստ հռովմէական իրաւունքի այսուհետև*

*խստիւ արգելւում է.* «Mulierum vero nequoquam, neque sine dote eas ad viros venire, nec emi a maritis futuris, quod barbarice hactenus apud eos servabatur; non ipsis solummodo haec ferocius sentientibus, sed etiam aliis gentibus exhonorantibus naturam et femineum iniurantibus genus, tamquam non a deo sit factum nec serviat, nativitati, sed tamquam vile et exhonorandum et extra omnem competentem consistens honorem.

*Մխիթար Գօշի Դատաստանագրքից (գլ. ԾԻԱ, մասն Առաջին) երեւում է, որ հարսնացուն պսակուելիս բերում էր իւր հետ ամուսնու տունը իրեն սեփականութիւն դարձած ինչքը, որ* XII *դարում յայտնի էր «երեսաց տեսոյ» անունով և որը բաղկանում էր նշանուած միջոցում իւր փեսացուից և սրա ազգականներից ստացած նուէրներից։ Այդ «երեսաց տեսոյ»ն ուրիշ ոչինչ է, եթէ ոչ մի մնացորդ այն փրկանքի կամ գնման գումարի, որ վճարւում էր փեսայի կողմից հարսնացուին։ Գնման պրօցէսն էլ ժամանակի ընթացքում, ինչպէս ապացուցանում են զանազան ազգերի իրաւաբանական սովորութիւնները, փոփոխութեան ենթարկուելով, սկսել է վերանալ ու վերածուել մի այլ գործողութեան, այսինքն ընծայաբերութեան, որ անում է փեսան կամ սորա ծնողները աղջկան՝ լինի դա դրամով կամ իրերով։ Զարմանալի չէ, որ հայոց մէջ էլ գնման երևոյթը կարող էր աստիճանաբար, մանաւանդ հռովմէական իրաւունքի ազդեցութեան տակ, որը չէր ընդունում գնման սովորութիւնը, եթէ ոչ լիովին վերանալ, գոնէ վերափոխուել մի ուրիշ գործողութեան, այն է «երեսաց տեսոյ» և այլ նոյնանման սովորութիւնների։*

*Նոյն այդ սովորութիւնը, որի մասին յիշատակում է Մխիթար Գօշը, այսօր տակաւին անարատ պահպանւում է Հայաստանի շատ տեղերում։ Ախալքալաքի ու Շուշուայ գաւառներում հանդիսաւոր նշանադրութիւնից յետոյ, փեսան, սորա ծնողներն ու սոցա հետ եկած ազգական հիւ-*

րերն սկսում են հարսնացուին փող ընծայել, և այդ գործողութիւնը կոչւում է «երես տեսանք»։

Շիրակում հարսնախօսութիւնից մի քանի շաբաթ յետոյ թէ քաղաքում և թէ գիւղերում սովորութիւն կայ «հարսնտես» անելու։ Այս դէպքում հարսնացուին, բացի նշանադրութեան փողից ու մատանուց, փեսայի ազգականները շարքով ոսկի, արծաթեղէն ու այլ և այլ իրեր ընծայ են տանում [1]։

Այլ տեղերում նոյն սովորութիւնը կատարւում է աւելի բնորոշ գոյնով։ Վրաստանի շատ կողմերում հայերը սովորութիւն ունին հարսը եկեղեցուց տուն բերելուն պէս ներս տանել սենեակը, խաչեղբայրը բարձրացնում է նրա երեսի քողը և հրաւիրում է ամենքին գալ տեսնել հարսի երեսը, այսինքն տալ ընծաներ. ուստի այդ սովորութիւնն էլ կոչւում է երեսատես կամ երես տեսով [2]։

Շատ հայաբնակ գաւառներում սովորութիւն կայ, որ հարսը, եկեղեցուց՝ պսակադրութիւնից դառնալով, չի մըտնում փեսայի տունը և չի նստում, մինչև որ սկեսուրը կամ փեսայի ազգականները չմօտենան և մի մի արծաթէ կամ ոսկէ դրամ տալով, ներս չհրաւիրեն։

Ակնայ մէջ նշանադրութեան ժամանակ, երբ երկար սակարկութիւններից յետոյ աղջկայ ծնողները տալիս են վերջնական համաձայնութիւնն իրենց դստեր ամուսնութեան համար, փեսացուն, սորա ծնողներն ու ազգականներն ընծայում են արծաթէ կամ ոսկէ դրամներ հարսնացուին, որ հերթով մօտենում է ամենքին և ձեռքերը համբուրում [3]։

Այնուհետև աւելորդ չի լինիլ այստեղ յիշատակել մի այլ տեսակ ընծայաբերութիւն, որ անում է փեսան հարսնացուին, երբ սոքա առաջին գիշերն առանձնանում են

1) Էմինեան Ազգագրական Ժողովածու, հատ. Ա. եր. 240.

2) Վահան վրդ. Բաստամեան՝ Դատաստանագիրք Մխ. Գօշի տես. Ծանօթութիւն երես 290.

3) Բիւրակն—Կ. Պօլիս 1900 թ. № 23

առագաստ մտնելու։ Այս նուիրատուութիւնը կոչւում է ընկան բացէք, որով փեսան կարծես գնում է աղջկայ կուսութիւնն և իրաւունքը նրա հետ խօսելու, այսինքն նրա անձին տիրելու իրաւունքը, որովհետև սովորութեան համաձայն փեսան ու հարսնացուն նշանադրութիւնից սկսած մինչև այդ գիշերը իրար հետ չեն խօսում։

Փեսայի ու նրա ազգականների կողմից հարսնացուին նուիրատուութիւն անելու այս տեսակ սովորութիւնը խիստ ընդհանրական բնաւորութիւն է կրում և գրեթէ բոլոր ազգութիւնների սովորութական իրաւունքի մէջ կարելի է գտնել։ Շատ բնորոշ էր այդ սովորութիւնը հին հռովմէական իրաւունքի մէջ, ուր յայտնի էր donatio ante (prorter) nuptias անունով, որ կընշանակէ ընծայաբերութիւն ամուսնութիւնից առաջ (ամուսնութեան պատճառով)։ Մինչդեռ հռովմէական իրաւունքով խստիւ արգելւում էր ամուսնացած ժամանակը որևէ ընծայաբերութիւն անել կնոջը, որպէսզի վերջինս սիրոյ պատրուակով չըհարստահարէր ամուսնուն, ընդհակառակը նուիրատուութիւններ անել իւր հարսնացուին նախ քան պսակը թոյլատրւում էր զուտ անտեսական շարժառիթներից։ Այս դէպքում օրէնքը պաշտպանում էր մի հայեացք, այն է՝ կինն ապագայում, ապահարզանի կամ մարդուց զրկուելու ժամանակը, ունենայ իւր անձնական մի սեփականութիւն՝ peculium, որը բաղկացած էր միմիայն dos-ից՝ օժիտից, ու յիշեալ նուիրատուութիւններից և որի վրայ ամուսինը սեփականութեան ոչ մի իրաւունք չունէր։ Ակներև է, որ այդ donatio-ն, որ հոմանիշ է հայկական «երեսաց տեսոյին», մի մնացորդ է գնման սովորութեան՝ coemptio-յի։ Այդ donatio-ն իւր իրաւաբանական հետեւանքներով, antiferna-յի (նուիրատուութիւններից կազմուած գումարը) նշանակութեամբ պարփակում է իւր մէջ գնման պրոցէսսի գաղափարը, որ ժամանակի ընթացքում զարգանալով, կորցրել էր իւր սկզբնական բնաւորութիւնը։

Նոյն հետևանքները նկատելի են նաև հայկական սո-

*վորութական իրաւունքի մէջ։ Այն բոլոր ընծաները, որ ստանում է հարսնացուն, դառնում է նրա անձնական սեփականութիւն և կոչւում է շատ բնորոշ անունով՝ արնագին, այսինքն իւր սեփական մարմնի, իւր արեան գինը։ Ուրեմն այդ ընծաները մի տեսակ հատուցումն են, մի տեսակ գին կորցրած կուսութեան համար։ Շատ պարզ է, որ արնագինը հռովմէական* antiferna*-յի նման, իբրև հետևանք երևաց տեսոյի ևայլն նման նուիրատուութիւնների, երբեմն հնում ծաղկող գնման գործողութիւնից մնացած մի հետք է։*

## VI.

*Բացի վերև նկարագրած հարսանեկան սովորութիւններից, որոնք իրենց վրայ կրում են հարսի գնման որոշ հետքերը, մի քանի հայկական գաւառներում իրականութեան մէջ, տակաւին մեր օրերում, կարելի է հանդիպել, թէ ինչպէս ամուսնութեան հարցում միշտ հանդէս են գալիս հարսի վաճառքի ու գնման սովորութեան գործողութիւնները։ Թէև այդ գնումը տեղ տեղ մի տեսակ այլափոխուած է, բայց և այնպէս որոշակի աչքի է զարնում իւր առանձնայատուկ գծերով, որոնք միանգամայն կարող են տեղի ունենալ լոկ առևտրական բնաւորութիւն ունեցող դաշինքների մէջ։*

*Բաւական է միայն նկատի առնել այն հայեացքը, որ մեր ժողովուրդն ունի դէպի կինը, և մեզ պարզ կըլինի, թէ ինչպէս պէտք է վարուէին ամուսնութեան հարցում։ «Աղջիկն օտարի ապրանք է» կամ «աղջիկը ծախու ապրանք է»—ահա այն առածները, որոնք միշտ հնչում են մեր ժողովրդի բերանում և ստիպում ըստ այնմ էլ իրագործել իւր հայեացքները։ Բուլանըխում հարսնացուի համար ժողովուրդն միշտ ասում է. «Աղջիկը թաշկինակ մ'է, որ պէտք է ձգել ձեռաց վրայ», և կամ նշանադրութեան ժամանակ բարեմաղթում են՝ «խէր տեսնես քո բաղարից*

(առևտուրից)»։ Վարանդայում փեսացուի պատգամները, երբ գնում են հարսնացուի ծնողների մօտ աղջկայ ձեռքը խնդրելու՝ միշտ ասում են. «Աստուած տայ անփոշմնելի առվտա (առևտուր) լինի»։

Ըստ Բենսէի վկայութեան՝ ամուսնութիւնը Բուլանըխում կատարւում է գրեթէ գնմամբ. հարսնախօսութեան ժամանակ սակարկում են, թէ որքան պէտք է վճարի փեսան աղջկայ համար, և այդ գումարը կոչւում է խալանի. սրա առաջին մասը վճարւում է աղջկայ տէրոջը նշանտուէքին, իսկ երկրորդը՝ պսակից 1—2 շաբաթ առաջ [1])։

Նոյն երևոյթը մենք պատահում ենք Ղարաբաղում։ «Գնմամբ ամուսնութիւնը դեռ ևս գոյութիւն ունի նաև Վարանդայում, որ երևում է հղէ կտրնէ ծիսի մէջ։ Այստեղ աղջկայ և տղի հայրերն ու բարեկամները երկար սակարկելուց յետոյ որոշում են, թէ տղի հայրը որքան փող պիտի տայ աղջկայ հօրը՝ աղջիկը տանելու համար։ Այս գումարը տատանւում է 20—100 րուբլու միջև։ Եւ մինչև որ այդ փողը չյանձնուի աղջկայ հօրը, որ սովորաբար այդ օրն է տեղի ունենում, պսակը չի կարող տեղի ունենալ» [2])։

Գնման գործողութիւնը մի տեսակ դաշինք է, որ կապում են երկու շահագրգռուած կողմերը. իսկ ամեն մի դաշինք կապելուն նախապէս հետևում է սկզբնական համաձայնութիւնը, որ կայանում է որևէ առհաւատչեայի մէջ։ Վերջինս դառնում է մի գրաւական դաշինքի անխախտելի իրականացման համար։ Ահա այս տեսակ բնորոշ գիծ, որ յատուկ է առևտրական և ընդհանրապէս դաշինքների գործողութիւններին, գտնում ենք և հարսի գնման սովորութեան մէջ։ Վարանդայում երկար «հա ու չէ» ասելուց յետոյ, երբ վերջապէս աղջկայ ծնողները յայտնում են իրենց համաձայնութիւնը, ամուսնացող երիտասարդը իւր եղբօր կնոջ հետ, տանելով մի հասարակ 20—60 կոպեկանոց մա-

[1]) Ազգագրական Հանդէս—Բուլանըխ, 1899. գիրք Ե.

[2]) Եր. Լալայեան՝ Վարանդա, եր. 118.

տանի, գնում է աղջկայ տունը։ Փոքր ինչ խօսակցութիւնից յետոյ աղջիկը, իւր երեսը քողով ծածկած, թէյ է մատուցանում։ Երիտասարդի հետ եկած կինը աշխատում է բանալ աղջկայ երեսը ու տեսնել նրա գեղեցկութիւնը։ Ապա համբուրում է ճակատից և բերած մատանին դնում մատը։ Այս ծէսը տեղական բարբառով ըռն տանիլ է կոչւում [1])։

Զանգեզուրում այն գումարը, որ վճարում են տղայի ծնողներն աղջկայ ծնողներին հարսնացուի համար կոչւում է ճընապան, այսինքն ճանապարհի գինը, և կամ կոչւում է այլ անունով ծծագին. ժողովրդի կարծիքով այստեղ վճարւում է մօրից ծծած կաթի գինը։ Բացի ծծագնից տղայի հայրը պարտաւորւում է հարսնացուի ծնողներին ուղարկելու մի եզ կամ երկու ոչխար, 5—6 կուժ գինի, կէս կուժ օղի, թօփ ու կէս դարայի կտոր [2])։

Շատ բնորոշ է այն խորհուրդը, որ տեղի է ունենում Տաթևում-Սիսիանում աղջկայ ու փեսայի ծնողների միջև, երբ որոշում են հարսանիքի օրը և թէ որքան փող ու ընծայ պէտք է տայ փեսայի կողմը աղջկայ տիրոջը։ Այդ խորհուրդը տեղական բարբառով կոչւում է տուր և առ, կամ բաշըղ կալըն, որպիսի սակարկութեանը մասնակցում են նաև երկու կողմի ազգականներից ընտրուած մի մի հաւատարմատարներ՝ վաքիլներ [3])։

Զաւախքում, երբ վերջապէս աղջկայ հայրն յայտնում է տղի կողմից եկած պատգամներին իւր աղջիկը տալու համաձայնութեան մասին, վերջիններս գալիս են տղի հօր մօտ և խորհրդակցում, թէ որքան գումար պէտք է տալ աղջկայ տէրերին և առնելով այդ գումարը գնում են աղջ-

---

1) Անդ. եր. 120.

2) Եր. Լալայեան՝ Զանգեզուրի գաւառ Բ. հատ. եր. 72.

3) Сборникъ матеріаловъ по описанію мѣстн. и народовъ Кавказа, Выпускъ II, 1882 г. և Выпускъ XIII 1892 г. „Татевъ“. Նաև Ե. Լալայեան—Զանգեզուրի գաւառը՝ Սիսիան հատ. Ա. եր. 114.

*կայ տունը։ Յիշեալ գումարը կոչւում է հաղէմասի, որ արաբերէն նշանակում է այծ ասել, համաձայնել։ Պէտք է յիշել, որ պատգամները տղի տունը մտնելիս ամէն անգամ հիւրասիրւում են, իսկ աղջկայ տանը մինչև հաղէմասին տալը ոչ մի բանով չեն հիւրասիրւում։ Աղջկայ հայրը կանչում է իւր ազգականներից մի քանիսին և պատգամների հետ նստում օղան։ Պատգամները խնդրում են աղջկայ հօրը որոշել, թէ ինչ պիտի առնէ տղի հօրից աղջիկը տալու համար։ Սա հրաժարւում է, ասելով՝ թէ աղջիկը իմս չէ, այս ինչինն է, թող նա ասի։ Սա էլ, նախապէս իմանալով աղջկայ հօր միտքը, սկսում է բարձրից բռնել։ Պատգամները սկսում են սակարկել և կանգ են առնում գլխաւորապէս վճարելիք փողի վրայ, որ տատանւում է 30—220 միջև։ Որչափ աղան սիրահարուած և աղքատ լինի, այնքան հադէմասին բարձր կըլինի. այդ է պատճառը, որ աղքատ երիտասարդը ստիպուած է լինում կամ պարտքի տակ ընկնել, կամ փախցնել աղջկան։ Երկար սակարկութիւններից յետոյ, որ երբեմն մի քանի օր է տևում, փոխադարձ զիջողութիւններով վերջապէս համաձայնութիւն են կայացնում, և պատգամները վճարում են իսկոյն դրամը աղջկայ հօրը [1])։*

*Ախալցխայի գաւառում էլ գոյութիւն ունի գնմամբ ամուսնութիւնը։ Այն գումարը, որ վճարւում է փեսայի կողմից, յայտնի է գլխագին կամ թըրքերէն բաշլըղ անուններով։ Գլխագինը հատուցանում են հարսնացուի ծնողներին, երբ վերջինները գալիս են այցելութեան փեսացուի տունը և յայտարարում վերջնականապէս, թէ յօժար են իրենց աղջկայ ամուսնութեանը [2])։ Նոյն տեղը սովորութիւն կայ, որ նորափեսան հարսանիքից առաջ քաւորի ու մի քանի մակարների առաջնորդութեամբ անձամբ գնում է բարեկամներին ու ծանօթներին հարսանիքի հրաւիրելու։*

[1]) *Ե. Լալայեան—Ջաւախք, Ա. եր. 124.*

[2]) Свадебные обычаи ахалцыхскихъ армянъ—Этнографическ. Обозр. 1889 г. № 1.

*վերջիններս այդ միջոցին մի մի աղուխ կապելով փեսայի վզին շնորհաւորում են՝ «բարի առուտրով»* [1]*։*

*Հարսի գնման սովորութիւնը «բաշլըղի» եղանակով գոյութիւն ունի նաև Շիրակի գաւառում։ «Առաջարկութիւնները սրանք են. 100 մանէթ բաշլըղ, 5 հատ խալաթ, 1 թոփ լաւ Սպահանի շալ, մէկ մահուդ չուխացու, մէկ լաստիկ արխալուղցու, 12 գազ ղանավուզ ու մէկ սև հախի, այսինքն կալթնագին»* [2]*։*

*Հարսի գնման այդ տեսակ սովորութիւններն այն աստիճան խորն են արմատացած մեր ժողովրդի բարքերում, որ մինչև օրս հնարաւորութիւն չի եղել միջոցներ ձեռնարկելու յիշեալ սովորութիւնից առաջացած ծանր հետևանքները, եթէ ոչ վերացնելու, գոնէ մեղմացնելու նպատակով։ Այդ փաստը իւր վրայ է գրաւել նաև հայ եկեղեցական վարչութեան ուշադրութիւնը։ 1902 թուականի յունիսի 14-ին և յուլիսի 4-ին Ախալցխայի ու Ախալքալաքի գաւառի բոլոր քահանաներից ժողովներ էին գումարուել գործակալ Ընձակ վարդապետի նախագահութեամբ, որպէսզի խորհրդակցեն այդ հարցի մասին։ «Մշակ» լրագրի Ախալքալաքի թղթակիցը հետաքրքիր տեղեկութիւններ է տալիս այդ մասին։ «Մեր գաւառի բոլոր հայ գիւղերում տիրող հաղէմասի, բաշլըղ կամ գլխագին անունով յայտնի տգեղ, անպատուաբեր և վերին աստիճանի վնասակար սովորութիւնն արմատախիլ անելու նպատակով, Ընձակ վարդապետը իւր վիճակի բոլոր քահանաներին երկու անգամ ժողովի հրաւիրեց... Նախագահը մի առ մի բացատրեց այն վնասները, որոնք առաջ են գալիս հաղէմասի սովորութիւնից, որ կայանում է աղջկան կամ այրի կնոջը փողով համարեա թէ գնելու կամ վաճառելու սովորութեան մէջ. յետոյ օրինակներ բերեց գաւառում տեղի ունեցող այդ ընտանեկան անհամաձայնութիւններից ու պառակտումներից, որոնք առաջ են եկել*

*1) Անդ.*

*2) Էմինեան Ազգագրական ժողովածու, հատ. Ա. եր. 239.*

*այդ սովորութիւնից... Ժողովը նպատակայարմար համարեց՝ մի յանձնաժողով ընտրել, որ գործակալ վարդապետի նախագահութեամբ՝ հաղեմասու և առհասարակ գիւղական նշանադրութեան ու հարսանիքի վերաբերեալ այլ տգեղ սովորութիւններն ու շռայլ ծախքերը արմատախիլ անելու և չափաւորելու համար՝ մանրամասն ծրագիր ու պարտադիր կանոններ կազմէ և ներկայացնէ հետևեալ քահանայական ժողովին»[1])։*

*Սուտ չկայ, որ այդպիսի պայմաններում շատ ծանր է լինում այն աղջկայ դրութիւնը, որը մօտենում է ամուսնական հասակին։ Կարծես, ժողովրդի մէջ ամենքն էլ զգում են այդ. բայց և այնպէս՝ հաշտւում են իրականութեան հետ, հաշտւում են հարս գնելու գաղափարի հետ, հետևելով ու հաւատարիմ մնալով «պապերի ադաթին»։ Մանաւանդ զգում են իրենց այդ անմխիթար վիճակը հէնց իրենք կանայք. նոքա զգում են, թէ իրենք առարկայ են և դրւած են ասպարիզի վրայ սակարկութեան ու վաճառքի համար։ Եւ նոցա այդ հոգեկան դրութիւնն արտայայտւում է միմիայն այն երգերում, որոնց մէջ հայ գեղջկուհին գիտէ մելամաղձիկ ու ազատօրէն իւր ցաւերը հնչեցնել։ Բուլանըխում, նմանապէս և Ջաւախքում, երբ հարսին դարդարում են հարսանիքի ու պսակադրութեան խորհրդի համար, կանանց մասում միշտ երգում են հետևեալ բնորոշ տողերը, որոնք պարզ ցոյց են տալիս թէ կանանց ճակատագիրը որոշւում է առևտուրով՝ գնմամբ.*

*Զհէրիկ խաբեցին կուռէ մէ գինով,*
*Զմէրիկ խաբեցին թափիկ մէ շիլով,*
*Զաղբէր խաբեցին ջուխտակ մէ ջզմով,*
*Զքուրիկ խաբեցին մատիկ մէ հինով.*
*Զդրամի հանդուրձ արձըկեցին՝*
*Զաղջիկ մամուց ջոկեցին*[2])։

---

1) *«Մշակ», 1902 թ. № 149.*

2) *Բենսէ—Բուլանըխ՝ Ազգագրական Հանդէս 1899 թ. գիրք Ե. Նաև Ե. Լալայեան—Ջաւախք, եր. 141.*

*Նոյնանման գաղափար է արծարծում նաև հետևեալ երգը, որ տարածուած է Տաճկահայաստանի մի քանի գաւառներում.*

*Հըմա, մամս, հըմա մամս, արի ի՞նչ է էղի.*
*Եկած են գիս կըտանեն, ի՞նչ են բերած.*
*Բերած են տըմր ու տըմր, գըռ ու գըռ*
*Գլանկճոտին, մաղէ խարխիս, ծամ թոթվիլ.*
*Ու պսպկլի. ապոյին բերած են քօլօս մը,*
*Մախաթ ծէր կըսոսկըտայ կանեն վրէն,*
*Հար քոսուրայ բերան մէկ կ՚երևայ։*
*Հըմա եկան տարան, տարան քաւորոջ*
*Տուն դըրեցին, փլաւներ կերանք.*
*Տէրտէր էկաւ ըրեց պըտուպուտ*
*Գնաց, խը ես կամէ չենք [1])։*

*՚Ի հարկէ, և ծնողները սովորութեան ազդեցութեան տակ նայում են իրենց աղջկայ վրայ, իբրև մի առարկայի։ Շատ ուշագրաւ են այն խօսքերը, որ արտասանում է մայրը Գանձակի գաւառում պսակադրութեան գիշերն, իւր աղջկանից բաժանուելիս. «Խի՞ ես լաց ըլում, որ աղջիկն ա իր հօր տանը մնացել, որ դու մնաս։ Մի բուռ մոխիր ես՝ ուրիշին ենք տալիս, պէտք ա գնաս, ջուրն ենք գըցում՝ պէտք ա սուս կենաս, ընկնես, կրակն ենք դցում, պէտք ա աչքերդ խփես, մէջն ընկնես... [2])։*

VII.

*Արդ կարող է հարց ծագել, թէ ո՞ւր է գնում և ո՞ւմ է պատկանում այն վճարը, որ ստացւում է հարսի գնման գործողութիւնից։ Մանաւանդ հասկանալի է այս տեսակ հարցի առաջանալը, երբ մտաբերենք, որ մի քանի տեսակ ընծայաբերութիւններն ու փողերը դառնում են հարսի անձնական սեփականութիւն, որպիսին է արնագինը, որի մասին արդէն առիթ ենք ունեցել խօսելու։*

---

*1) «Բազմավէպ» 1902 թ. № № 9—10. եր. 481.*
*2) Ե. Լալայեան—Գանձակի գաւառ, եր. 27.*

Այն բոլոր տեղերում, ուր հարսի գնումը պահպանուել է քիչ թէ շատ անարատութեամբ, եղած փաստերի հիման վրայ կարելի է եզրակացնել, որ գլխագինը (բաշլըղը, հագեմասին և ծծագինը) և ընդհանրապէս հարսի համար վճարելիք գումարը յանձնւում է աղջկայ հօրը։ Այլապէս չէր էլ կարող լինել։ Գնման սովորութիւնը քիչ թէ շատ ծաղկում է մեր ժողովրդի մէջ այնտեղ, ուր նահապետական ընտանիքի կազմը տակաւին կանգուն է մնացել։ Հայ նահապետական ընտանիքը, կազմելով թէ տնտեսական և թէ սոցիալ – իրաւաբանական տեսակէտից մի առանձնակի միաւոր, հիմնուած է համայնական գաղափարի վրայ։ Այդ համայնական ընչական սկզբունքի համեմատ տանուտէրը, նահապետը, տան մեծը հանդէս է գալիս հասարակական փոխադարձ յարաբերութիւնների մէջ իբրև ներկայացուցիչ իւր ընտանիքի, իբրև պատասխանատու անձն այն տնտեսական-իրաւաբանական համայնքի, որի տէրն է։ Օժտուած լինելով իւր ընտանիքի անդամների վերաբերմամբ անսահման իրաւունքով, patria potestas-ով, խօսք չկայ, որ ընտանիքի հայրն իւր այդ լիազօրութիւնը կըտարածէր նաև իւր աղջկայ համար ստացուած գումարի վրայ, որը իսկապէս, իրաւաբանօրէն նայած, դառնում է ոչ միայն հօր, այլ և ամբողջ ընտանեկան համայնքի անբաժանելի սեփականութիւնը [1])։ Բացի դրանից՝ զանազան օրինակներից երևում է, որ աղջկայ հօր տրուած գումարի հետ միևնոյն ժամանակ աղջկայ ընտանիքի մօտակայ միւս անդամներն էլ բաներ են ստանում. մայրը, եղբայրը, քոյրը ստանում են դերիացու, կապացու կամ չուխացու, դուլպա, քօլօս, գօտի, եայլուխ և այլն։ Սակայն այս վերջին ընծայաբերութիւնները նորագոյն ժամանակի երևոյթներ են և բնաւ չեն խախտում այն սկզբունքի էութիւնը, որի մասին է մեր խօսքը։ Հարսնացուի համար տրուելիք գումարի էական մասը՝ գլխագինը, որի մէջ է իսկապէս պար-

[1]) Տես մեր յօդուածը՝ Очерки по обычному семейному праву армянъ—„Кавказскій Вѣстникъ“ 1902 г. № 1.

փակւում գնման գաղափարի մարմնացումն, յանձնւում է միմիայն աղջկայ հօրը՝ համայնական ընտանիքի պատասխանատու տիրոջը, համայնական սեփականութեան իրաւաբանական ներկայացուցչին։

Ժամանակի ընթացքում սոցիալ-տնտեսական պայմանների ազդեցութեան տակ նահապետական գերդաստանն իւր համայնական գաղափարով սկսում է տարրալուծուել ու վերածուել անհատական ընտանիքի, ուր ընտանեկան իրաւունքի վերաբերմամբ անշուշտ գերիշխում են այլ հայեացքներ։ Այստեղ արդէն ընտանիքի կազմի թէ բարոյական և թէ տնտեսական հիմքը կազմում է անհատական գաղափարը. մի գաղափար, որ արդի ընտանիքի բաղկացուցիչ անդամներին թէ ներքին և թէ արտաքին հասարակական փոխադարձ յարաբերութիւնների մէջ տալիս է այնպիսի անկախութիւն, որ միմիայն մեր ժամանակակից սոցիալ-տնտեսական սկզբունքների անհատականութեանն են յատուկ։ Ահա այսպիսի պայմաններում, ակներև է, որ հօր իրաւունքն ընտանիքի անդամների ընչքի ու սեփականութեան, որպէս և նոցա անձնական ինքնուրոյնութեան վրայ, որոշ ու զգալի չափով սահմանափակւում է։

Ընտանիքի հայրն այլ ևս անկարող է լինում իւր աղջկայ համար տրուած գնման վճարի վրայ այն իրաւունքը բանեցնել, ինչ որ յատուկ է նահապետական համայնական ընտանիքի գաղափարի տիրապետութեանը։ Ո՛չ թէ հայրը, այլ աղջիկն է այժմ հանդիսանում տէր այդ վճարուած գումարի, որն իւր անձի, իւր գլխի վաճառումից է ստացուել։ Շնորհիւ այդ անհատական գաղափարին, աղջիկն ամուսնանալիս ամենայն իրաւամբ այն գումարը, որ վճարել են նրա հօրը իւր անձի համար, տանում է իբրև իւր անձնական սեփականութիւն իրեն հետ ամուսնու տունը։ Ահա այստեղից ծագում է օժիտի կամ բաժինքի գաղափարը, որ յայտնի էր տակաւին հին հռովմէական իրաւունքի մէջ dos անունով, և որ կազմում էր կնոջ սեփականութիւնը—peculium։ Բաժինքի մասին յիշատակւում է նաև

Մխիթար Գօշն իր Դատաստանագրքի ՃԻԱ գլխում (մասն Ա)։ Օժիտի գաղափարի աստիճանական զարգացման զուգընթաց սկսեց քայքայուել հարսի գնման սովորութիւնը, որը յետագայ սոցիալ-տնտեսական գործօնների ճնշման տակ այլեւս անկարող էր արդէն հասարակական պայմաններում իր գոյութիւնը պահպանել։ Այսպիսով՝ ժամանակի ընթացքում հարսի գնման՝ գլխագնի սովորութիւնը շատ տեղերում իսպառ չքացաւ, տեղի տալով մի նոր հիմնարկութեան՝ օժիտի սովորութեանը։

Հարսի գնման վճարից օժիտի կամ բաժնքի գոյանալը 'ի հարկէ կատարուել է երկար էվօլիւցիօնի ընթացքով, ուստի իր բնաւորութեամբ օժիտի էութիւնը տարբեր աստիճաններ է ներկայացնում։ Մի տեղ մենք տեսնում ենք, թէ ինչպէս օժիտի և հարսի գլխագնի հիմնարկութիւնները հաւասար իրաւունքով միաժամանակ ծաղկում են ժողովրդական սովորութիւններում. մի այլ տեղ օժիտի ներկայութիւնը շնորհիւ իր նորութեան տակաւին ոչ մի քաղաքացիութիւն չի գտել. և ընդհակառակն այն բոլոր տեղերում, ուր գլխագնի սովորութիւնն իսպառ վերացել է, այնտեղ օժիտի գաղափարը գերիշխող դիրք է բռնել և այնքան ինքնուրոյն բացառիկ բնաւորութիւն է ստացել, որ շատ գիտնականներ ճգնում են ապացուցանել, որ օժիտի գաղափարը միանգամայն անկախ է գլխագնի գաղափարից ու առաջ է եկել միանգամայն այլ պայմաններից։ Այդ պատճառով և ժողովրդական սովորութիւնների ուսումնասիրութեանց բազմաթիւ աշխատութիւնների մէջ օժիտի գոյացման ու էութեան մասին տիրում են զանազան թեր ու դէմ կարծիքները։

Նպատակ չունենալով ծանրաբեռնել ընթերցողներիս ուշադրութիւնն արդի իրաւագիտութեան մէջ օժիտի գոյացման ու զարգացման վերաբերեալ լոյս տեսած տեսական հայեացքների քննութեամբ, շատանում ենք շեշտելու մեր այն կարծիքը, որ հակիրճ կերպով արտայայտեցինք փոքր ինչ վերը։ Օժիտի սովորութիւնը մենք ընդունում ենք իբրև

մի հիմնարկութիւն, որ առաջ է եկել նախկին գլխագնի՝ հարսի գնման վճարի՝ սովորութիւնից աստիճանական զարգացմամբ, երբ հասարակական փոխադարձ յարաբերութիւնները սկսել են կարգաւորուել սոցիալ-տնտեսական զարգացման հետևանքի անհատական սկզբունքներով։ Աշխատենք մի քանի բնորոշ փաստերով լուսաբանել օժիտի վերաբերմամբ վերը յայտնած կարծիքները։

Հին եբրայական իրաւունքի մէջ տիրապետում էր գնման սովորութիւնը։ Փեսացուի կողմից վճարուած գլխագնի մի մասն, ինչպէս երևում էր, անցնում էր աղջկայ ձեռքն իբրև իւր սեփականութիւն։ Այդ մասին կարելի է կողմնակի ապացոյցներ գտնել Աստուածաշնչի մի շարք հատուածների մէջ։ Գիրք Ծննդոցի ԼԱ. գլուխը բովանդակում է Յակոբի և Լաբանի պատմութեան այն կէտը, թէ ինչպէս նոքա երկուքը փոխադարձ համաձայնութիւն էին կայացրել, որով Լաբանի հօտից այն բոլոր խաշները, որոնք «գորշախայտ, պիտակ և խայտախարիք» ծնուէին, պէտք է պատկանէին Յակոբին, իսկ մնացեալները Լաբանին։ Եւ եղաւ, որ մի քանի տարի անընդհատ ծնւում էին խաշներ այն գոյնով ու նշաններով, որ հարկաւոր էին Յակոբին։ Այսպիսով Յակոբը հարստացաւ 'ի հաշիւ Լաբանի։ Այն ժամանակ Լաբանի որդիքը բողոքեցին Յակոբի դէմ, թէ «էառ Յակոբ զամենայն ինչս հօր մերոյ, և 'ի հօր մերոյ ընչից արար իւր զայն ամենայն փառս»։ Ուստի Ռաքէլն ու Լիան՝ Լաբանի դստերքն իրաւունք համարեցին յայտնել Յակոբի մօտ առաքած հրեշտակին. «Մի՞թէ գոյ ևս մեր այսուհետև բաժին՝ և ժառանգութիւն 'ի տան հօր մերոյ։ Ոչ ապաքէն իբրև զօտարոտի՞ս համարեալ եմք նմա, զի վաճառեաց զմեզ՝ և եկեր ուտելով զարծաթ մեր»։ Յայտնի գիտնական Մայերը, լուսաբանելով այս վերջին խօսքերը իւր աշխատութեան մէջ՝ «Die Rechte der Israeliten, Athenern und Römer», նկատում է, որ Լաբանի աղջիկների խօսքերից հետևում է, որ սրանք ստանում էին իրենց հօրից փեսացուի կողմից իրենց համար վճարած գլխագնի մի մասը։

Հակառակ դէպքում Ցակոբի կանայքը ինչ հիմք ունէին տրտնջալու, իբր թէ նոցա հայրը ուրացրել էր, ինչպէս իրենք են ասում, «ուտելով զարծաթ մեր», այսինքն նրանց վճարած գլխագինը [1]։

Մահմետական իրաւունքի մէջ յայտնի է, որ փեսացուի կողմը վճարում է հարսնացուի հօրը որոշեալ գլխագին, որ կոչւում է մահր։ Մահմետական իրաւունքի Հանեֆիական դպրոցին պատկանող յայտնի մի լուսաբանութեան՝ Հեդայի մէջ՝ խօսւում է մահրի մասին, իբրև մի վճարի, որի մի մասն աղջկայ ծնողները գործադրում էին օժիտի համար և յատկացնում էին 'ի սեփականութիւն աղջկան, ամուսնու տունը գնալիս։

Գերմանական հին օրինագրքերից երևում է, որ հարսնացուի հօրը վճարուած գլխագնի ամբողջ գումարից պատրաստում էին հարսի օժիտը։ Նոյն իսկ Տակիտոսը իւր «Germania» աշխատութեան XXIII գլխում հաստատում է, թէ իւր ժամանակակից գերմանացիների մէջ սովորութիւն կար, որ «ինչպէս փեսան է բերում հարսնացուի համար օժիտ (իմա գլխագին), նմանապէս էլ աղջիկը բերում էր իւր փեսացուի տունը օժիտ»։

Իռլանդական հին իրաւունքի մէջ էլ նկատելի է օժիտի գոյացումը գլխագնից այն փաստի հիման վրայ, որ փեսացուն իւր վճարելիք գլխագնի գումարը բաժանում էր, տալով մի մասը աղջկայ հօրը, իսկ միւսը—իրեն հարսնացուին՝ իբրև նրա սեփականութիւն, որ վերջինս անշուշտ բերում էր իւր հետ որպէս օժիտ՝ ապագայ ամուսնու տունը։

Օսերը 1866 թուականին Կովկասում, երբ տեղական վարչական մարմինների առաջարկութեամբ և իրենց փոխադարձ համաձայնութեամբ որոշել էին վերացնել իրենց բարքերից միքանի, իրենց հայեացքով վնասակար սովորութիւններ, վճռել էին՝ ապագայում հարսնացուի համար վճարուելիք գլխագնի՝ նրանց լեզուով իրաղի՝ մի երրորդ

[1]) М. Ковалевскій—Первобытное право, Вып. I երես 144

մասը յատկացնել օժիտ պատրաստելու։ Այդ մի ձեռնարկութեամբ արդէն ճանապարհ էր հարթուած, որպէսզի գնման սովորութիւնն աստիճանաբար չքանար. որովհետև կարելի էր ենթադրել, որ օսերը ժամանակի ընթացքում, վարժուելով հարսի գնման վերաբերեալ ձեռք առած միջոցների գաղափարին, յետագայում միանգամայն համաձայնուէին ամբողջ «իրադի» գումարը յատկացնելու օժիտին [1]։

Առաջ բերենք մի քանի օրինակներ հայոց սովորութական իրաւունքից, որոնք թէև աղօտ, բայց և այնպէս որոշ չափով կարող են լուսաբանել, որ մեր ժողովրդի կեանքումն էլ օժիտի ու գլխագնի սովորութիւնները, համեմատելով վերոյիշեալ փաստերի հետ, նման պատկեր են ներկայացնում. օժիտի ու գլխագնի փոխադարձ առնչութիւնները նոյնանման նշանակութիւն են ունեցել կամ ունեն և նոյն իրաւաբանական հետևանքի են յանգում։

Գանձակի գաւառում այն գումարը, մօտաւորապէս 15—100 րուբլի, որ տղի հայրը վճարում է աղջկայ հօրը, կոչւում է երևաշուր կամ մի շատ բնորոշ խօսքով պեժինքի փող, որովհետև այդ գումարի մի մասը ծախսւում է հարսնացուի օժիտի՝ բաժինքի վրայ [2]։

Ջաւախքում հարսի օժիտը պատրաստւում է հաղն-մասու, սաշուի և երևառևանքի փողերով։ Աղջկայ հայրը ոչ միայն իրենից ոչինչ չի վճարում, այլ և այդ փողերից աշխատում է գողանալ [3]։

Վերոյիշեալ երկու օրինակներից պարզ հետևում է, որ գլխագնի փողերի մի մասը յատկացւում է օժիտի համար և դառնում հարսնացուի անձնական սեփականութիւն։

Զանգեզուրում, երբ խնամախօսներն ու պատգամները սակարկում են և որոշում, թէ որքան պէտք է տղայի հայրը վճարի, միևնոյն ժամանակ որոշում են, 'ի հարկէ

[1]) М. Ковалевскій—Древній законъ и современный обычай, т.-I. стр. 248.

[2]) Ե. Լալայեան—Գանձակի գաւառ, եր. 22.

[3]) Նոյն—Ջաւախք, եր. 151.

գլխագնի համեմատ, թէ ինչ օժիտ պիտի տայ աղջկայ հայրը։ Սակայն գլխագնի գումարը հետզհետէ զգալի կերպով փոքրանում է և ընդհակառակն մեծանում է օժիտի գումարը։ Մի քանի գիւղերում գլխագնի սովորութիւնը սկսել է բոլորովին վերանալ։ Նոյն իսկ պատահում է, որ երիտասարդ փեսացուները, առաւելապէս օտար մեծ քաղաքներում արդէն եղածները, իրենք են աղջկայ հօրից փող պահանջում, բայց շատ քչերն են համաձայնում տալ [1]։

Նոյնն է կատարւում Վարանդայում, որտեղ գլխագնի քանակը որոշելուց յետոյ, փեսացուի կողմն է ձայն բարձրացնում և պահանջում է օժիտ, որ չափւում է տղայի կողմից տուած գլխագնի գումարի քանակով [2]։

Վերջին երկու օրինակներից կարելի է տեսնել, որ շատ գաւառներում օժիտը դարձել է արդէն մի անհրաժեշտ պահանջ, յետ մղելով գլխագին տալու սովորութիւնը, որ յիրաւի այդպիսի տեղերում սկսում է վերանալ և դառնալ մի մնացած ծէս, հոգևորքի մէջ ընկած մի սովորութիւն. և ընդհակառակն՝ այն գաւառներում, որտեղ ինչպէս օրինակ՝ Սիսիանում, բաշլըղ կտրելու կամ գլխագնի սովորութիւնը ծաղկում է խիստ պահպանողութեամբ, այնտեղ օժիտի սովորութիւնը միանգամայն բացակայում է։

Այսպէս ուրեմն առաջ բերած համեմատական փաստերից եզրակացւում է այն կարծիքը, որ մենք այս գլխի սկզբում յայտնել էինք. գլխագնի գումարը, որ սկզբներում անցնում էր աղջկայ հօր (ընտանիքի) ձեռքը, ատենաժամանակն զարգացմամբ փոխարկւում է օժիտի։ Աղջկայ հայրը փեսացուից ստացած գումարը փոխանակ իրեն սեփականութիւն դարձնելու, գործադրում էր յօգուտ հարսնացուի, որի համար պատրաստւում էր պահանջելի օժիտը։

---

1) Եր. Լալայեան—Զանգեզուր Բ. հատ. եր. 72.
2) Նոյն—Վարանդայ, եր, 127.

Կարծում ենք, որ բոլոր վերլուծած նիւթերը, որոնք դրուած էին ներկայ յօդուածով ընթերցողների առաջ, միանգամայն բաւական են հաստատելու այն փաստը, որ հարսի առևանգումն և գնումն հայ սովորութական իրաւունքի մէջ մի ժամանակ գերակշռող տեղ էր բռնում ամուսնական հարցում։ Այժմս, ինչպէս տեսնում ենք, առևանգումը խսպառ վերացել և կորցրել է իւր նշանակութիւնն իբրև դրական սովորոյթ, բայց հարսի գնումը տակաւին պահպանում է իւր գոյութիւնը տեղ տեղ կամ ամբողջովին կամ վերափոխուած ձևերով։ Ցամենայն դէպս այսօր չքանալու վրայ է ամուսնութեան միջոցի և այդ վերջին մնացորդը։ Այլապէս չի էլ կարող լինել։ Առևանգումն և ապա գնումը կարող են պահպանուել ու ծաղկել իրենց բնաւորութեան համաձայն պայմաններում։ Այնտեղ, ուր սոցիալ-կուլտուրական զարգացումը կանգնած է ստոր աստիճանի վրայ, ուր իրաւաբանական յարաբերութիւնները հիմնուած են միանգամայն ուրիշ սկզբունքների վրայ, քան թէ մեր ժամանակներում, այնտեղ խօսք չի կարող լինել ամուսնութեան այն եղանակների մասին, որոնք արդի քաղաքակրթուած հասարակութիւնների բաժինն են կազմում։ Ընթերցողն անշուշտ նկատած կլինի բոլոր վեր յիշած օրինակներից, թէ ժողովուրդն ինչ հայեացք ունի կնոջ նշանակութեան ու նրա իրաւաբանական դրութեան վրայ։ Կինը զուրկ է ակտիւ իրաւունքներից, նրա գոյութիւնն, իբրև լիաւանց անձնաւորութեան, հայ սովորութական իրաւունքը բնաւ չի ընդունում. հայ կինը կարծես լիաւանց առարկայի շարքն է դասուած։ Ուստի պարզ է, որ այդպիսի հայեացքների համեմատ էին վարուելու իգական սեռի հետ։ Վերցնենք օրինակի համար հարսի գնումը, որ ինչպէս ասել ենք, տեղ-տեղ տակաւին անարատ պահպանուել է։ Գնումը, իրաւաբանական տեսակէտից նայած, այստեղ հանդէս է գալիս իբրև ընչական յարաբերութիւններից բղխած մի դաշինք, որտեղ մի կողմը՝ աղջկայ ընտանիքը շահագրգռուած է նրանով, որ գիջանում է միւս կողմին՝

*փեսացուին իրենց աշխատաւոր ձեռքերից մէկը։ Անհերք է, որ այսպիսի դէպքում մի կողմը պահանջում է վարձատրութիւն, իսկ հակառակ կողմը դորա փոխարէն ձեռք է բերում մի նոր աշխատաւոր անդամ։*

*Կնոջ այդ տեսակ իրաւաբանական դրութիւնը մանաւանդ բացայայտ է դառնում բնական տնտեսութեան տիրապետութեան շրջանում։ Տնտեսական պայմանների զարգացմամբ փոփոխւում են և՛ իրաւաբանական յարաբերութիւնները։ Կինը կամաց կամաց կորցնում է իւր նշանակութիւնն իբրև իրաւանց առարկայի, և հասարակական աշխարհայեացքի մէջ աստիճանաբար ճանապարհ է հարթում այն գաղափարը, թէ կինն էլ կարող է իրաւանց անձն դառնալ և որ իսկապէս դառնում է։ Բնական տնտեսութեան շրջմամբ, նրա աւերակների վրայ բարձրանում է իրաւաբանական յարաբերութիւնների մի նոր շէնք, ուր չեն կարող տեղ ունենալ անախրօնիզմ դարձած սովորութիւնները, այլ ընդհակառակն ծնունդ են առնում ներկայ պայմաններին յատուկ անձնական իրաւունքներ։*

